Brnutean dem Gaghatiayi...

10 Nr. Հրատարակութիւն Հնչակ. կուսակցութեան. Nr 10

Սոցիալիստական Գրադարան

497

# ԲՌՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ

## ԳԱՂԱՏԻԱՅԻ ԳԱՏԱՊԱՐՈՒԹԻՒՆ

124 p.



Գինը 1 ֆրանկ.

ԱԹԷՆՔ
ՏՊԱՐԱՆ «ՀՆՉԱԿԻ»
1894

# ԱՌԱՋԱԲԱՆԻ ՏԵՂ

„Հնչակի" անցեալ տարուայ դեկտեմբերի համարում, պատասխանելով Բ. Դուան յախուռն յարձակումներին Հնչակեան կուսակցութեան վրայ, մենք խոստացանք հրատարակել զանազան թղթեր ու վկայագրեր Գաղատիայի յայտնի դատավարութեան վերաբերեալ, որի վըրայ մանաւորապէս թափւում են թշնամի կառավարութեան շանթերը։ Մենք այսօր կատարում ենք մեր խոստումը։ Յայտնի է, որ Բ. Դուռն անգլիական թերթերում անիմանալի, անճոռնի կերպով խեղաթիւրել էր այդ դատավարութեան վերաբերեալ իրողութիւնները և ամենատգեղ ու անճիշդ կերպարանքի տակ էր ներկայացըրել ամբաստանուած Հնչակեաններին, ինչ թոյլ էր տւել մեր ներքին թշնամիներին օգտւել մեր դէմ իրանց արած անընդհատ յարձակումների համար, ձայնակցելով Բ. Դրան։ Յայտնի է նոյնպէս, որ Գաղատիայի դատավարութիւնը տպագրւեցաւ իր ժամանակին Կ. Պոլսի հայ և թիւրք շատ լրագիրներում, և չը նայած, որ նրա մէջ ծայրից ծայր ամեն-մի տող խմբագրուած էր թիւրք կառավարութեան ձեռքով, անճոռնի կերպով աղաւաղուած դատավարութեան միջոցին Հնչակեանների տւած հարցաքննութիւններն ու արտասանած ճառերը, այնու ամենայնիւ տպագրւելով, նրանք խոր տպաւորութիւն թողին հայ հասարակութեան վրայ ի նպաստ Հնչակեան կուսակցութեան։ Եւ դա պարզ էր, թէ ինչու։ Որովհե-

տեւ Թիւրք կառավարութեան ամէն աղաւաղումները դարձեալ չէին կարողացել սքօղել Հասարակութեան աչքից Դատավարութեան մէջ Հնչակեանների բռնած օրինակելի ընթացքը, Հնչակեան կուսակցութեան զօրութիւնը և առհասարակ գործունէութիւնը, որ ակամայ խոստովանում են ինքը Բ. Դուռը և մեր այլ թշնամիները:

Այդ բոլորը չէ՞ ապացուցանում արդեօք, որ մախաթը պարկում չի պահվիլ և ճշմարտութիւնը երբեւան կը գայ:

Միւս կողմից այսօր մենք մեր պարտքն ենք համարում ի մի ժողովելով, լոյս ընծայել Գաղատիայի Դատավարութեան վերաբերեալ կարեւոր վկայաթղթերը՝ իրանց ճշմարիտ գոյնի տակ ներկայացնելու համար մեր դատապարտված ընկերների կռիւը բռնութեան դէմ, նրանց կրած ծանր տանջանքները, նրանց խօսած գեղեցիկ ճառերը Դատավարութեան միջոցին: Հայ ժողովուրդը պէտք է իմանայ, թէ որոնք են իր պաշտպանները, որպիսի անձնուրաց գործունէութիւն են նրանք ունեցել, որոնք են եղել նրանց առաջնորդող գաղափարները, որպէս են նրանք իմացել մահու առջեւ կանգնել դէմ առ դէմ: Այդ գործիչներն արժանի են Հայ ժողովրդի երախտագիտութեան:

Եւ ահա այդ երկու տեսակէտից մենք մեր պարտականութիւնն ենք համարում հրատարակել ներկայ բրօշիւրը, որ արդէն ինքն ըստ ինքեան աւելի, քան օգտակար է Հայ հասարակութեան համար. նա կարեւոր է:

***

Կար ժամանակ — և այդ ժամանակը շատ մօտ է. հազիւ չորս-հինգ տարի առաջ, — երբ ընդհանուր առժամբ հայերը մի մաշող թմրութեան մէջ էին: Երկիւղով էին նրանք մտածում ապագայի մասին, երկիւղով էին

# V

Նրանք դիտում ներկան և անվստահութեամբ ու թերահաւատութեամբ լսում յեղափոխական քարոզները։ Եւ այդ հասկանալի էր։ Ի՞նչ հասարակական գործունէութիւն էր տեսնվել մինչ այն ժամանակ ազգի մէջ, որից յուսացվէր բռնակալ լծի թօթափումը։ Ոչինչ։ Կայի՞ն արդեօք անձեր, հասարակական գործիչներ, որոնք ո՛չ միայն խօսքով, այլ և կենդանի գործով ցոյց տուած լինէին հայութեան, թէ վերջնականապէս որոշված ու ընտրված է նրա փրկութեան ճանապարհը։ Ո՛չ։ ԵՒ եղածները դեռ նոր էին դուրս գալիս անյայտութեան միջից, պատրաստելով իրանց մտաւոր ու բարոյական ոյժերը ժողովրդի փրկութեան խորանի վրայ դնելու համար։ Մի բան, որ գիտէր այդ ժամանակ հայ հասարակութիւնը, դա այն էր, որ մի քանի, այստեղից-այնտեղից դուրս պրծած և հանգամանքների բերումով „ազգասէրի“ անուն վաստակած տգեղ ինքնապաշտներ ի չարն էին գործ դնում ժողովրդի պարզամտութիւնը, դիւրաթեք վստահութիւնը, շռայլում նրան մեծամեծ խոստումներ։ Մինչդեռ յետոյ, երբ անցնում էին տարիներ և ամեն բան միշտ ու շարունակ մնում էր նոյն մեռելային անշարժութեան մէջ, ժողովուրդը դարձեալ ու դարձեալ իր ետեւը, իր հանդէպը, իր շուրջը տեսնում էր միշտ նոյն բռնակալութեան սոսկացնող ուրուականը, որ հալածում, տանջում, մահացընում էր նրան։

Ահա այդ թերահաւատ ու վհատեցնող վիճակի մէջ յանկարծ հարուած հարուածի վրայ պայթում են Էրզրումի և Կ. Պոլսի 1890 թ. յեղափոխական շարժումները. . . Անցնում է մի, երկու, երեք տարի և յեղափոխական տագնապն ու շարժումները ծաւալվում են ամբողջ Հայաստանում։ Ցոյցերը, երազները, նախագծերը,

ոգեւորութիւնը, ինքնաճանաչութիւնը, ինքնագործունէութիւնը — միանգամից թեւաւորվում են և յուսադրող ու փրկարար կերպարանքով սաւառնում այն ժողովրդի վրայ, սնվում իբրեւ ջերմոցում այն ժողովրդի սրտում, որ տակաւին երէկ կմախք էր թւում։ Եւ առաջացաւ յեղափոխական գործիչների մէկ ամբողջ շարք, երեւան եկան հերոսների տիպեր. . . և թիւրքական բանտերը, աքսորները լցվեցան նրանցով, մինչեւ որ մէկ օր, լուսադէմին, վառ արշալոյսով կարմրած երկնածրի վրայ նըկարվեցաւ նսեմ ու խոժոռ տեսքով Գաղատ՚՚յի դանարգսիւնը“, իր առաջին հինգ հերոս նահատակներով։ Դա հայկական յեղափոխութեան զանգակի խորհրդաւոր ու սառսեցնող ղօղանջն էր։ Նա հնչում էր, թէ հայ յեղափոխական կարմիր դրօշակն այլ եւս պարզված է, առաջացնելով մեծամեծ արհաւիրքներ և խոստացող ցանկալի փրկութիւնը։ Գաղատիայի Դատավարութիւնը եղաւ հայ ժողովրդի ազատական ձգտումների ու պատերազմի իմաստի ամփոփումն ու արտայայտիչն՝ իր լուսամիտ ու աներկիւղ ճառերով, և սուլթանական կառավարութեան պատմական առաջին դատապարտութիւնն՝ իր ծանր դատավճիռներով. . . .

Ու՜ մեծ է այն բարոյական ու մտաւոր կրթիչ ազդեցութիւնը, որ ունեցան յեղափոխական շարժումները հայութեան վրայ։ Այս վերջինն այսօր այլ եւս անճանաչելի է դարձել, և որքան սիրտ, եռանդ, գործելու փափագ են ներշնչում նրա մէջ մի շարք ազնիւ նահատակների սուրբ ու արիւնաշաղախ գերեզմանները և այն՝ այլ եւս սրբավայրեր դարձած՝ դաշտերը, քաղաքներն ու լեռները, ուր հոսել է հայ յեղափոխականի արիւնը։ Հայ ժողովուրդն այսօր այլ եւս մտել է կեանքի

մի նոր դարագլխի մէջ, որ, հակառակ ներկայ արհաւիրքներին, տագնապին, ապագայի հեռուում նշմարել է տալիս նոր ասպարէզ նրա քաղաքական, հասարակական, տնտեսական, մասնաւոր զարգացման ու առաջադիմութեան։ Եւ այդտեղ է նպատակը, դէպի որը նա սկսել է դիմել և կը գնայ մինչեւ վերջ։

Այդ բարոյական վերածնութիւնը, այդ ուղիղ գիտակցութիւնը, ժողովրդի մէջ մուտք գործած բարձր գաղափարների լուսաւոր հոսանքը և միանգամից մինչեւ վերջ այլ եւս ընտրած յեղափոխական վերանորոգիչ գործունէութիւնը—արդարեւ, այդ բոլորը մի մեծ գործ էր, հիմնական գործն էր ժողովրդի ազատութեան դատի։ Եւ այդ բոլորը կատարվեցաւ միայն մի քանի տարւայ ընթացքում, յեղափոխական շարժումների ազդեցութեան տակ։ Բանը նրանումն է, որ հայ ժողովուրդն իր կեանքի տաք մոխրի տակը պահված ունէր կայծեր, որոնք դուրս ցայտելով, պէտք է հրդեհէին նրա սիրտը, միտքը, զգացումը։ Եւ այդ ժողովուրդը, որ դեռ երէկ իսկ դողում էր բռնակալութեան առջեւ, ստրուկ, արհամարհված, անարգված, հարստահարված,—այսօր նա հերոս է։ Այսօր նա ելնում է գետնի վրայից, որին շղթայված էր դարեւոր ստրկութեամբ, և քրտնաթոր աշխատանքից իր ոսկրացած ու կոշտացած ձեռքերը դէպի վեր բարձրացնելով, լիաբաց բերանով նա աղաղակում է իր թշուառութիւնը և սպառնում իր հարուածը։ Այդ հարուածը նա կը տայ. նա կը տայ այն հրէշաւոր բռնակալութեան, որ ամօթահար ու երկիւղով փրփրում է նրա դէմ. նա կը տայ բոլոր հարստահարիչներին, կեղեքիչներին, նրա աշխատանքով, նրա արիւն ու մսով կերակրվող բոլոր օտարակերներին։ Եւ

Ի՞նչ ունի անելիք, եթէ ոչ այդ՝ այն դժոխային կեանքից յետոյ, որ նա ունեցել է դարերով և այն ընդարձակ բարօրութեան ձգտումներից ու պահանջներից յետոյ, որ ստեղծել է նրա կեանքը։ Սեւ թշուառութիւն, անարգանք, կողոպուտ, կոտորում, սով,— ամենը նա փորձել է և փորձում է այսօր իսկ իր վրայ։ Ի՞նչ է մնում նրան կորցնելիք ամեն բան կորցնելուց յետոյ։ Ոչինչ. Նրան այժմ մնացել է ընտրել կամ կեանքը, կամ մահը։ Նա ուզում է կեանքը և. դրա հետ իր իրաւունքը, իրաւունք ամենքի համար հաւասար—աշխատելու և վայելելու. Նա ուզում է իր բարօրութիւնը, ընդհանուրի հաւասար բարօրութիւնը. Նա ուզում է ամեն բան—մասնաւոր և հասարակական կեանք իր ծաղկած վիճակում։ Եւ իր այդ վերջնական, բուն նպատակը նա ձեռք կը բերէ մէկ օր, թէկուզ այդ օրը լինի հեռու։ Եւ այսօր նա իր յեղափոխական վճռատով ու մուրճով հարթում է ճանապարհը դէպի այդ վերջնական նպատակը, դէպի այդ իդէալը։ Իր քաղաքական իրաւունքներն է, որ այսօր անմիջական կերպով ձգտում է ձեռք բերել իր արիւնով, և երբ դրան հասնելով, նա կը փշրէ, կը գլորէ ստրկութեան բանտի դռները, հեռու հօրիզոնում նրա հանդէպ կը խաղայ, կը ժպտայ վերջնական մեծ նպատակի արշալոյսը։ Եւ աշխատաւոր ժողովուրդն այնուհետեւ իր բոլոր ոյժերով կը ձգտէ դէպի նա, դէպի այդ արշալոյսը—մարդկութեան ընդհանուր բարեկեցութիւնը, այդ աւետեաց աշխարհը։

13 Մարտի 1894. ԽՄԲԱԳՐ. „ՀՆՉԱԿԻ“.

# ԲՌՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ

---

ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆ ԳԱՂԱՏԻԱՑԻ. ՀԻՆԳ ՃԱՌ ԱՄԲԱՍ-
ՏԱՆՎԱԾՆԵՐԻ· ԿԵՍԱՐԻԱՑԻ՝ ԻՐ ՇՐՋԱԿԱՅՔՈՎ՛ՆԻ
ՍԵԲԱՍՏԻԱՑԻ ՛ՆԱՀԱՆԳԻ ԴԷՊՔԵՐԸ· ԲԱՆՏԱՅԻՆ
ՎԻՃԱԿ· ՏԻՊԱՐ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ
ԱՍՊԱՏԱԿԻ· ԿԱԽԱՂԱՆԻ ՏԱԿԻՑ·

---

## 1893 ԹՈՒԱԿԱՆԻ ՍԿԻԶԲԻՆ ՄԻՆՉԵՒ

### ԱՊՐԻԼԻ ՎԵՐՋԵՐԸ, ԳԱՂԱՏԻՈՅ ԵՒ ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒՆ ՄԷՋ ՊԱՏԱՀԱԾ ԱՊՕՐԻՆՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԽԺԴԺՈՒԹԵԱՆՑ ՀԱՄԱՌՕՏ ՆԿԱՐԱԳԻՐԸ.

---

1) Եօզկաթի հիւսիսային կողմը, 12 ժամ հեռաւորութեամբ, Սունկուրլու քաղաքի հայ եկեղեցին գիշերանց կը մտնեն մի քանի Թուրք չարագործներ և կը կողոպտեն եկեղեցւոյն բոլոր արծաթեղէնները։ Չարագործաց Թուրք լինելն ամեն օրինական փաստերով և մինչեւ իսկ չարագործաց միոյն կնոջ խոստովանութեամբ հաստատուած էր, բայց կառավարութիւնն, առանց ամըչնալու, այդ Թուրքերն անպարտ արձակելով, եկեղեցւոյն դրացի Արմենակ անուն երիտասարդ մը ձերբա-

*հալեց և երեք տարուան տաժանակիր աշխատութեան դատապարտեց, պատճառելով թէ այդ Հայու կացինը եկեղեցւոյ բակին մէջ գտնուած է։*

2) *Կեսարիայէն մի ժամ հեռաւորութեամբ Թալասի վարի թաղը, մի քանի թուրք սրիկաներ գիշերանց մտնելով Նորապսակ յոյնի մը տունը՝ այրը կը կապեն և հարսին ոսկեզարդ մազերու հիւսքը կտրելով կը տանեն։ Թալասի ոստիկանապետ Քիրիշճի օղլու Ահմէտ գիտնալով հանդերձ գործին հեղինակները (որոնք իւր ընկերներն են)՝ լուր կը տարաձայնէ թէ սորա հեղինակներ քրիստոնեայ են, և ուստի կը ձերբակալուին մի քանի անմեղ յոյն երիտասարդներ, որք բաւական ժամանակ և դրամ վատնելէ վերջ իրենց անմեղութիւնը հաստատելու համար՝ կարձակուին ազատ. բուն չարագործք կը մնան անպատիժ։*

3) *Նոյնպէս Թալասի վարի թաղը Աքիլլեւս անուն Յոյն երիտասարդի մը տունը գիշերանց մտնելով, Աքիլլեւսը կը կապեն, կը ծեծեն, կը վիրաւորեն չարաչար և դժբաղդ հարսը լլկելէ յետոյ՝ թէ գլխի և թէ տան մէջ գտնուած ծանրագին իրեղէնները յափշտակելով կերթան։ Այս չարագործք ևս կը վայելեն պաշտպանութիւնը վերոյիշեալ Ահմէտի* *), *որ միւս կողմէն կստիպէ զԱքիլլեւս որ չարագործութիւնը Հայ երիտասարդներու վերագրէ։ Աքիլլեւս կընդդիմանայ, գիտնալով արդէն բուն չարագործները, բողոք կը բառնայ անոնց դէմ, բայց ապարդիւն։*

---

*) *Այս Ահմէտ, ուխտեալ թշնամի քրիստոնէից, իբր 3 տարի առաջ մօտակայ գետակէ մը անցնելու պահուն իր ձիուն համետը կը դնէ քահանայի մը վրան, որու վրայ կը նստի և խաչին հայհոյելով կանցնի գետակը։*

4) Կեսարիոյ Հարիւրապետ Սէյֆուլլահ՝ խումբ մը ոստիկաններով՝ Հայ փախստական մը ձերբակալելու համար քաղաքէն ժամ մը հեռու Հաճըլար անուն տաճիկ գիւղ մը կերթայ։ Անդ խումբ մը գիւղացիներ եւս զինելով կը միացունէ իր խմբին և կը սկսի հալածել իր որսը։ Երբ կը տեսնէ թէ իր ջանքեր ապարդիւն կելլեն, բոլոր զայրոյթը կը թափէ Կեսարիոյ և յիշեալ գիւղի միջեւ գտնուած՝ քրիստոնէից այգիներու, պարտէզներու և հոյաշէն ամարանոցներու վրայ. իր կատաղած խմբին կը հրամայէ անխնայ քակել, քանդել, այրել այդ շէնքերը, կտրել, խորտակել ծառերը և իսպառ աւերել այգիները *)։

5) Կեսարիոյ Ճիւմայ բազարի մէջ Հայ Նպարավաճառներու Նպարեղէնները կը յափշտակեն եւ խանութպաններն անխնայ կերպով կը ծեծեն։ Այս բարբարոսութիւնք ի գործ դրուեցան Հարիւրապետ Սէյֆուլլահի քաջալերած խմբի միջոցաւ։ Այս դէպքէն և ընդհանուր կոտորածի մը սպառնալիքէն սարսափած՝ Հայերը մի քանի օրեր չի համարձակեցան իրենց տներէն դուրս ելլելու։

6) Եօզկաթի մէջ փետրուարի վերջերը, հարուստ վաճառականներէն եւ ուսումնական դասէն՝ Յակոբեան Պետրոս էֆէնտիի տունը կը մտնեն գիշերանց 11 զինեալ Թուրքեր, դրամ և գոհարեղէններ կը պահանջեն. իրենց խնդիրքը կը կատարուի, և սակայն դարձեալ անգթօրէն կը սպաննան ամբողջ ընտանիքի կենաց, լարե-

---

*) Այս հրձիգ խմբին պարագլուխներ, որք ցոյցի համար բանտարկուեցան ի Կեսարիա, քանի մը ամսէն վերջ ներման արժանանալով՝ երեքական ոսկի պարգեւ ստացան ի վարձատրութիւն...

րով ու չուաններով խեղդամահ ընել ջանալով։ Եւ կը յաջողին խեղդամահ ընել Ցակոբեան էֆ.ն. տիկինին վիզը կը կապկպեն, բերանը կը գոցեն և վրան կը դիզեն անկողին, վերմակ և ն. մի ուրիշ սենեակի մէջ չուաններով կը կապկպեն զաւակաց և սպասուհւոյն վիզերը։ Սոցա ճիչերէն դրացիք հասնելով օգնութեան՝ ընտանիքը կը գտնեն դիակնացած, մայրը կիսամեռ, զաւակները ողորմելի դրութեան մէջ։ Այդ չարագործաց վեցը ձերբակալուեցան և այդ ձերբակալելոց երկուքը խոստովանեցան եղելութիւնը. բայց յետոյ տեղական կառավարութեան մասնաւոր հրահանգին համեմատ՝ մի երկրորդ հարցաքննութեան միջոցին ուրացան ամեն ինչ։ Կըսեն թէ բանտն են, բայց այդ մեզ խիստ տարակուսելի կերեւի։

7) Եօզկաթի մէջ Յունուարի սկիզբները մանուկ մը կը մեռնի զոր քրիստոնեայք կը տանին ու կը թաղեն։ Ոստիկաններ թաղուած զէնք գտնելու յուսով երիցս բացին գերեզմանը և վերջապէս երբ փոկրիկ դիակէն ի զատ ոչինչ գտան՝ պղծեցին գերեզմանը։

8) Եօզկաթէ վեց ժամ հեռաւորութեամբ Քէօհնէ գիւղի մէջ խուզարկութեանց միջոցին՝ ոտից կախան ընելով կը սպաննեն մի հայ մանուկ։ Այս սպաննութեան առթիւ տարաբաղդ ծնողաց կողմէն մատուցուած բոլոր աղերսագրեր ու հեռագրեր բացարձակապէս անլսելի կը մնան։

9) Նոյն Քէօհնէ գիւղի մէջ՝ Եօզկաթի միւտիր Մէհէմմէտ Շիւքրի էֆ. եւ իւրայինք Գապագճեան Յովհաննէսի տանը խուզարկութեան ժամանակ՝ մի կարգ անարգանք տեղալէ վերջ՝ տանը արժէքաւոր կարասին և իրեղէնները կը յափշտակեն։ Ասկէ քաջալերուած՝ թուրք

խուժանը կըսկսի թալանել գիւղը։ Հարստահարուողք կը բողոքեն Եօզկաթի կառավարութեան, բայց բողոք, աղերս, հեռագիր, բոլորն ապարդիւն կը մնան։

10) Պուրձեալ Քէօհնէի մէջ Աւագ անուն մի հայու տուն „մուզիրր էվրագ" փնտռելու պատրուակաւ յիշեալ միւտիրը իւր հետ ունենալով 100 է աւելի թուրք կատաղիներու մի խումբ, կը կոխէ տունը և ոչ սակաւ անարգանքներէ վերջ՝ մէջտեղը գտնուած 3—4 տարուան մանուկը հրելով կը ձգէ կրակարանին մէջ. տղան կայրի և մի քանի օր վերջ կը մեռնի չարաչար մահով։ Աւագ եղելութիւնը կիմացունէ այլ և այլ տեղեր, բողոքելով, հեռագրելով ևն։ Գաղատիոյ կուսակալը յիշեալ միւտիրը՝ առանց քննութեան և պատժոյ ենթարկելու՝ մի այլ գիւղաքաղաքի վրայ կը կարգէ։

11) Եօզկաթի շրջակայ Քէլլէր գիւղի մէջ Խանճեան հաճիի գործակատար Կարապետի խանութը կը թալանեն ցորեկ ատեն։

12) Պաշտպանութեան համար խճուղւոյն վրայ շըրջող Եօզկաթի ոստիկաններէն մի քանիներ՝ Ինճիրլի գիւղէն վերադարձող Կարապետ անուն եօզկաթցիի մը 90 ղրուշը, գօտին և ապրանքը կը կողոպտեն։ Կարապետ Եօզկաթի կառավարութեան կը բողոքէ. գօտին միայն կը վերադարձնեն իրեն. ոստիկանք առանց պատժոյ ենթարկուելու կը պաշտօնավարեն։

13) Ըվանազ (Գաղատիոյ եւ Սունկուրլուի միջեւ) գիւղաքաղաքի մօտակայ Չըպլագ Թրքաբնակ գիւղը գտնուող կիւրինցի Շիրվանեան Ղազարի սենեակը կը պաշարեն վեց զինեալ չէրքեզներ. կը կողոպտեն 70-80 ոսկւոյ ապրանքը, յետոյ կը սպառնան խողխողել խեղճ հայը։ Գիւղացիք օգնութեան փութալով հարուածնե-

րու տակէն հազիւ կազատեն զինք և վիրաւոր՝ կը դընեն սայլի մը վրայ ու կը ղրկեն Եօզկաթ, ուր Ղազար կը բողոքէ ու կաղերսէ որ իր վէրքեր դարմանուին եւ չարագործք ձերբակալուին։ Թողունք չարագործաց ձերբակալութիւնը, հիւանդի քննութեան և դարմանման իսկ անտարբեր կը մնայ կառավարութիւնը։ Խեղճ հայը կը մեռնի 8 օր վերջ։ Աւելորդ է ըսել թէ ցարդ ոչ մի անօրինութիւն եղած է յայտնի չարագործաց մասին։

14) Եօզկաթէ 2-3 ժամ հեռի մի ձորի մէջ չէրքէզներ կը կողոպտեն Ալեքսան Զատրըճեան անուն վաճառական մը. 25-30 ոսկին և ձին առնելէ վերջ՝ խիստ կը գանակոծեն ու կը թողուն։ Դժբաղդ մարդը գըրեթէ սողալով կը հասնի քաղաք, կը դիմէ կառավարութեան, կը բողոքէ, բայց իր բողոք, այդ կարգի անթիւ բողոքներու նման, կը մնայ անլսելի։ Երանի՜ թէ ասով վերջանար խնդիրը։ Հազիւ իր ցաւերն մոռցած ու ցաւերէն բուժուած՝ ինքը զոհ կերթայ մի քանի թրքաց կողմէ յերիւրուած զրպարտութեան եւ կամբաստանուի իբր „քաղաքական յանցաւոր“ ու կայսերական ներմամբ միայն կարձակուի զատկին երկար տանջանքներէ վերջ։

15) Եօզկաթէն 9 ժամ հեռաւորութեամբ Սահաթլը կոչուած գիւղի եզրը թուրք ննջեցեալի մը համար փոս մը պատրաստուած էր. այդ պահուն մի հայ գիւղացի կանցնէր այդ տեղէն. թուրքեր յարձակելով խեղճին վրայ, կը բռնեն և ողջ ողջ կը թաղեն զայն և երբ հեռուէն կը նշմարեն յուղարկաւորներու գալը՝ կենդանի թաղեալը փոսէն կը հանեն գրեթէ շնչասպառ։

16) Եօզկաթէն 18 ժամ հեռաւորութեամբ Բուզունլուի կողմերը հայ անցորդի մը վրայ կը յարձակին թուրքեր և խեղճը կողոպտելէ վերջ՝ ամորձիքները կը հանեն։

17) Սեբաստիոյ կուսակալութեան Սարը-Օղլան անուն գիւղին մէջ չորս Թուրք սրիկաներ Մարտիրոս անուն Հայէ մը բռնի ստակ կը պահանջեն. երբ մերժողական պատասխան կառնուն՝ կը խորհին նոյն գիշեր Հայի գլխին հետեւեալ խաղը խաղալ.— Մարտիրոսին տան կից պարտէզի մէջ յիշեալ սրիկաներ իրենցմէ միոյն պարանոցը թեթեւապէս կը վիրաւորեն և իրենք կը պահուին. վիրաւորեալը կըսկսի աղաղակել „օգնութի՜ւն, օգնութի՜ւն, Մարտիրոս կը մորթէ զիս“։ Եւ ահա այս աղաղակի վրայ դարանակալք, ինչպէս նաեւ այլք, „օգնութեան“ փութալով, Մարտիրոսը կը հանեն իւր տունէն, մաստիկ կը ծեծեն, ապա կը յանձնեն կառավարութեան։ Կառավարութիւնն ալ իր կարգին կը շարունակէ տանջել որսը. հրաշեկ երկաթով կը խարեն շրթները, քիթը, կռնակը և ծնկաց յօդերուն միջեւ քարեր զետեղելով՝ ծնկաքարշ կը քալեցունեն և այլ այս կարգի տանջանքներով կը ստիպեն խ ո ս տ ո վ ա ն ի լ ինչ որ չէ ըրած։

18) Դարձեալ նոյն կուսակալութեան Կէմէրէկ կոչուած մեծ գիւղի մօտ՝ Մուտրասըն անուն Թիւրքմէն գիւղի մէջ՝ առեւտրական գործով հոն գտնուող Եղիա անուն մէկը կը բռնեն ու կըստիպեն որ „յայտարարութեանց“ մասին որոշ տեղեկութիւններ տայ իրենց։ Երբ սա կը յայտնէ թէ ինք ոչինչ կրնայ ըսել այդ մասին, ձեռքերը ետին կապելով կը նստեցունեն կրակի դիմաց և աստիճան առ աստիճան կը մօտեցունեն կրակին։ Երբ կը տեսնեն որ ծեծի տակ և կրակի առջեւ կը նուաղի, կայրի և տակաւին „ոչինչ չըգիտեմ“ կասէ, հայհոյանք տեղալով գլխին կարձակեն խեղճը։

19) Հետեւեալ հրձգութիւնք տեղի ունեցան գրեթէ յաջորդաբար։

Ա. Մարզուան Օրիորդաց Նորակառոյց գոլէճը (Ամերիկեան) ի սպառ հրոյ ճարակ եղաւ Խուսրէվ փաշայի (առենօք յայտնի աւազակապետ) մասնաւոր հրահանգով և կարգադրութեամբ։ Այս ապացուցուած է ամեն կողմէն օրինական փաստերով, մինչեւ իսկ հրձիգներու եւ տեղական պաշտօնէից ոմանց խոստովանութեամբ։

Բ. Նօզկաթի բողոքական հայոց եկեղեցին գիշերով կրակ դրած են. օգնութեան փութացողք հազիւ յաջողած են ազատել շէնքը ամբողջովին հրոյ ճարակ ըլլալէ։

Գ. Նօզկաթէն 13 ժամ հեռաւորութեամբ Մէլէզ գիւղի հայոց եկեղեցին ամբողջովին մոխիր դարձած է։ Հրձիգներու թուրք լինելը ամեն կերպով հաստատուած է, բայց կառավարութիւնը որ և է ձեռնարկ ըրած չէ չարագործները պատժելու։

Դ. Յիշեալ գիւղէն դէպ հարաւ 3 ժամ հեռաւորութեամբ Տէնտիլ գիւղի հայոց եկեղեցին մասամբ հրոյ ճարակ եղած է, դարձեալ թուրք հրձիգներու ձեռամբ։

Ե. Տէնտիլէն դէպ հարաւ 3 ժամ հեռու Կէմէրէկի բողոքական հայոց եկեղեցին մասամբ հրոյ ճարակ եղած է, նոյնպէս թուրք հրձիգներու ձեռամբ։

Զ. Սեբաստիոյ բողոքական հայոց եկեղեցին նոյնպէս այրած է մասամբ։

Այս բոլոր հրձիգութեանց մասին և ոչ իսկ թեթև քննութիւն մը կատարած չէ կառավարութիւնը (ի բաց առեալ Մարզուանի օրիորդաց ամերիկեան գոլէճը, որուն համար, կիմանամք թէ կառավարութիւնը 500 ոսկի տուժել յանձն առած է)։ Մի քանի տեղերու մէջ ադոնց մասին բողոքողներն իսկ բանտարկած է։

20) Ամասիոյ մէջ փետր. 16-ին Համբարձում Աշճըեան (Գարաճեան) անուն ընտիր երիտասարդը իր ձիերը վարժեցունելու մէջոցին կը հանդիպի միւթէսարըֆի քեռորդւոյն և սպասաւորին։ Այս վերջինք ձիերու վրայ հեծած զէնքեր պարպելով կզբօսնուին։ Համբարձում կը խնդրէ որ ձիարշաւը և զինավարժութիւնը մի քիչ դադարեցունեն, ըստ որում ձիերը կը խրտչէին։ Թուրքեր կատաղելով՝ կիջնեն իրենց ձիերէն. վար և դաշոյնի հարուածով կը խողխողեն Համբարձումը։ Կառավարութիւնը ցոյցի համար, եղած բողոքներու վրայ, բանտարկեց մարդասպանը։ Բայց հիմա բոլորովին տարբեր մի գոյն կուզեն տալ խնդրոյն, որպէս թէ միւթէսարըֆի քեռորդին իր պատիւը պաշտպանելու համար (՛ ՛ ՛) սպանած ըլլայ զայն։ Հետեւապէս չարագործի ազատ արձակումը մօտ է։

21) Կեսարիոյ երեք հայ եկեղեցիներն, ինչպէս նաեւ Թոմարզայի վանքը սաստիկ խուզարկեցին զէնք գտնելու յուսով և երբ ոչինչ գտան՝ անարգեցին և սրբապղծեցին վայրերը։

22) Կատաղած Թուրքեր կը քարկոծեն հայ ննջեցեալ մը և յուղարկաւոր թափօրը. ժողովուրդը հեռագրով եղելութիւնը կը ծանուցանէ սուլթանին, բայց ապարդիւն։

23) Կէմէրէքի մօտ մի խումբ հայ ծխախոտի մաքսախոյսերու վրայ կը յարձակին Թուրք գիւղացիներ։ Հայեր զինու զօրութեամբ կը դիմադրեն և ահա հեռուէն ու մօտէն չէրքէզներու և Թիւրքերու նորանոր զինեալ խումբեր կը հասնին, գնդակահար կը սպանեն Կիւրինցի Ճանօ անուն քաջ երիտասարդը և վիրաւորելով նորա ընկերները զէնքերնին կը կողոպտեն և զիրենք կը յանձ-

նեն կառավարութեան։ Կառավարութիւնն ալ այս վիրաւորեալ խմբակը „Հայ ապստամբներ“ լինելու ամբաստանութեամբ կը խրկէ Գաղատիոյ բանտը։

Հարկ չենք սեպեր երկարել այս տխուր ցանկը։ Ցայտնի դէպքեր արդէն գրաւեցին հանրութեան ուշադրութիւնը, դէպքեր սարսափի, չարչարանաց, յափշտակութեան, աւերածի, հրկիզման, պատւոյ բռնաբարութեան, արիւնհեղութեան ևն., որոնց թատր հանդիսացան Սեբաստիոյ և Գաղատիոյ նահանգներ, Կեսարիա, որոյ դէպքի նկարագիրը կըդնենք վարը և Եվքարա, ուր յունվար 8 ի պաշարմամբ ոստիկաններու և հարիւրաւոր պաշըպօզուքներու կողմէ գործ դրուեցան ամենավայրենի խժդժութիւնք։ *)

## ԿԵՍԱՐԻԱՅԻ ՄԵԾ ԴԷՊՔԸ **)

„Յունուարի սկիզբն էր, ուրբաթ օր մը։ Առաւօտուն կանուխ Կեսարիոյ եւ տեղւոյս գիշերապահք կը տեսնեն թէ ամէն հրապարակի, պանդոկներու, կառավարութեան պալատի և կառավարութեան պաշտօնէից տներու պատերուն տաճկերէն գրերով թղթեր՝ „յայտարարութիւնք“՝ փակցուած են։ ***) Անմիջապէս տեղակալին կիմացնեն խնդիրը։ Վերջինս սարսափած թէ մի գուցէ շփոթութիւն ծագէ թըքաց կողմանէ, կը հրամայէ շուտով առանց մէկուն կարդալու ժամանակ տալու՝ բոլոր թղթերը ժողվել։

---

*) Եվքարայի դէպքի նկարագիրը դրված է յետագայ երեսներում, „Գաղատիայի բանտարկվածների կրած չարչարանքները“ գրութեան մէջ։

**) Արտատպված „Հնչակ“-ի Nr 3-ից, 1893 թ.

***) Այդ „յայտարարութիւնները“ զետեղված են աւելի ցածր։

Իսկոյն կը կատարուի հրամանը և 200-էն աւելի յայտարարութիւններ կը ժողվուին։ Տեղակալը կը զարհուրի անոնց բովանդակութենէն և միանգամայն կը կորցընէ գլուխը և ինչ անելիքը չիմանար, երբ բոլոր հայաբնակ ու տաճկաբնակ գիւղերէ ու քաղաքներէ ոստիկաններ կը շտապեն դէպի նա նոյնպիսի յայտարարութիւններու օրինակներով՝ որ գտած էին պատերուն փակցուած։ Փոքր ինչ ուշքի գալով կուսակալը կը հրամայէ միեւնոյն ժամանակ հեռագրով իմաց տալ սուլթանին եղելութիւնը։ Սուլթանը հեռագրով կը հրամայէ գործը շուտով քննել ու հետեւանքներու մասին իրեն հեռագրել։ Այդ նպատակով ալ Պոլսէն կուղարկեն երկու էսքէր փաշաներ, որոնք հետերնին առնելով Գաղատիոյ կուսակալն ու անգլիական հիւպատոսն՝ կուգան Կեսարիայ։ Ասոնց առջին գործը կը լինի 500-էն աւելի անուանի հայեր ձերբակալել Կեսարիաէն և շրջակայքէն։ Այս բազմաթիւ ձերբակալութիւններէն հայ ժողովուրդը կը սկսի յուզուիլ։ Այդ յուզումն աւելի եւս կը սաստկանայ, երբ կը լսուի թէ ինչ տեսակ անտանելի տ ա ն ջ ա ն ա ց կենթարկուին այդ բանտարկուածներին, մանաւանդ անոնք, որոնց վրայ փոքր ի շատէ կասկածներ կան։ Իսկ երբ բանտարկուածներէն մին՝ Ռ ո ւ բ է ն Ճ է վ ա հ ի ր ճ ե ա ն անուն՝ չը կարողանալով դիմանալ այն վայրենի տանջանքներուն որ կուտան իրեն, կը սկսի մի առ մի թւել քաղաքին յեղափոխական կ ա ր ծ ո ւ ա ծ հայերուն անունները և երբ այդ առթիւ կը սկսուի մի ամբողջ շարք նորանոր ձերբակալութիւններ, ժողովուրդըն այնպէս կը կատաղի, որ կառավարութեան համար այլ եւս պարզ կըլլայ՝ թէ հայերուն կողմանէ շփոթութիւններ կրնան ծագիլ։ Կառավարութիւնը կուզէ այդ

## II.

## ՀՆԴԿԱԿԱՆ ՄԵԾ ԴԱՐՄԱՆՆ ԱՇԽԱՐՀԻՍ ԱՄԵՆԱԼԱՒ ԲԺՇԿՈՒԹԻՒՆՆ Է·

---

*„Այս դարմանն ամենալաւ ու միակն է, որ կարող է բժշկել անեվրիզմը, կաթուածահարութիւնը, շնչարգելութիւնը, անմարսութիւնը եւ ուրիշ հիւանդութիւններ, որոնցից ամեն տարի այնքան մարդիկ են մեռնում Թիւրքիայում։*

*„Հարիւր տարիից ի վեր է, ինչ նա գործածվել է Հնդկաստանում նշանաւոր Ժըհան Կումպանիի ձեռքով, եւ շարունակել են գործածել ահա 34 տարիից ի վեր անգլիական մեծ թագուհու՝ Վիկտորիայի յատուկ հըրահանգով։*

*„Այդ դարմանն ունի մեծ ազդեցութիւն ժողովրդի վրայ, որին դարձնում է ուժեղ ու տոկուն մեծ ճիգերի համար։ Նա ժողովրդին դարձնում է աչքաբաց եւ ընդունակ։ Շատ են խորհուրդ տվել գործածել այն Թիւրքիայում, սակայն տգէտներն ու չարակամներն արգելեցին նրա մուտքը այդ երկրում։*

*„Բայց թող ամենքն ունենան համբերութիւն և ըսպասեն։ Քիչ ժամանակից վերջ Հնդկաստանից եկող մարդիկ, որ փորձառու և հմուտ են այդ մեծ դարմանի գործածութեան մէջ, կը գան Իսլամի երկիրն՝ առաջարկելու այդ դարմանը ժողովրդին, որն այդ ժամանակ կը հալածէ այն տգէտ ու չարակամ մարդկանց, և այդպիսով Իսլամի երկրում ամեն տեղ կը թագաւորէ մեծ բաղդաւորութիւն։“*

## ԳԱՂԱՏԻԱՅ ԲԱՆՏԱՐԿՈՒԱԾՆԵՐԻ ԿՐԱԾ ԶԱՐՀՈՒՐԵԼԻ ՉԱՐՉԱՐԱՆՔՆԵՐԸ. *)

*Գաղատիա—Բանտ.*

„Գաղատիոյ բանտէն կը գրեմ այս տողերն։ Կեսարիայէն, Եօզկաթէն, Մարզուանէն և այլ մի քանի տեղերէն յաջորդաբար թուով 500 հոգի էինք իբր քաղաքական յանցաւորներ, որոնցմէ մի մասը ազատ արձակուեցան, թիւրք կառավարութիւնը մինչեւ իսկ չը կարենալով նոցա անմեղութեան վրայ շինծու յանցանքներ բարդել։ Անլուր, պժգալի փորձեր ու միջոցներ գործադրուեցան իբր խոստովանութեան դեղ ու դարման։ Չարչարանք, անարգանք, ծեծ, մերկանք, ըլկանք, անօթի ու ծարաւ թողուլ սովորական ձեւակերպութիւնների կարգն անցած էին։ Սատկաշունչ ձմեռը աւելի դառն կը գործէր, գոգցես աջակցելու համար այդ փորձերուն ու միջոցներուն. ցնցոտի խշտեակները՝ անկողնոյ տեղ, մկների կրծած հացի փշրանքները՝ կերակուրի տեղ, աղտոտ սափորիկներու գարշահոտ ջրերն—ամեն բան խնայողութեամբ տըրուեցան հայ բանտարկեալների պապակն ու ծարաւը անցունելու համար. Հինաւուրց ժանկոտած ծանրակշիռ շղթաները երեւան հանեցին, որպէս և անտանելի ռումբերն ու գնդակները, փայտեայ ու երկաթեայ ձեռնակապները՝ ոմանց վզին, ոմանց ոտքին և շատերու ձեռներուն կապուեցան՝ խօսեցնելու համար այն բաները, որ կառավարութիւնն ու բանտի պաշտօնեայք կամենային լսել։

Բանտարկուածները *խոստովանցնելու* համար աւելի յարմար որոշած էին փոխանակ ցերէկի՝ ձր-

*) Արտատպուած „Հնչակ"-ի Nr 7-ից 1893 թ.

մեռուան երկար ու ահարկու գիշերները հարցաքննել։ Մերթ ժամը 3-ին, մերթ կէս գիշերին եւ մերթ առաւօտեան դէմ բանտի իւրաքանչիւր նկուղէն կը լսուէին լալահառն ու հեղձամղձուկ հեծկլտանքներ և երբեմն ալ աղիողորմ աղաղակներ — „չե՛մ գիտեր, չը տեսայ. . . մեռա՜յ“, և այլն, որոնց կը խառնուէին թիւրք բանտարկուածներու սոսկալի գոռումն ու գոչումը, ամեն կողմէ երգուած այլազան և սրիկայական թ ի ւ ր ք ի ն ե ր ը ն ու մ ա ն ի ն ե ր ը, որպէսզի — կառավարութեան պատուէրով — չը լսուին փայտի հարուածներու տակ կամ տաքցած ու շամփրած շիշերու առաջ, կամ ձիւնի կոյտերու վրայ բոլորովին մերկամարմին ծնրադրող հայ պատանւոյն ու երիտասարդին ճիչն ու վայնասունը։ Մ՛ին փայտէ հարուածներու տակ կը գոչէ՝ „ալ մեռա՜յ“, ուրիշ մը ձիւնի կոյտերու վրայ գլխէ ի վար թափուած սառ ջրերէն սառսուռ զգալով կը պոռայ՝ „ալ սառեցա՜յ“, և անդին մի երրորդը հրաշէկ ու տաքցած շիշերէն ստացած վէրքերի ցաւէն կը ճւայ ու կը ճչէ, աղիողորմ ձայնով ըսելով՝ „այրեցա՜յ, մրկեցա՜յ, ալ կը բաւէ, հրէշներ. մեռցուցէք զիս որ ազատիմ“. . . եւ այսպէս շատերը տանջեցին։ Անարգանքները, չարչարանքները՝ գրչիս ներածները միայն գրեցի, սակայն գործ դրուեցան նաեւ երբեմն այնպիսի լըբենի միջոցներ թէ պատանւոյն, թէ չափահասներու վրայ, որ լսելով իսկ մարդ կը սարսափի անշուշտ և գրիչներն իսկ կը կասին ու կը պատկառին այդպիսի գազանային ու վայրենի աբարոյութիւնները գրելու ու գծելու, որոնք գործադրուեցան կառավարութեան պաշտօնեաներու բացորոշ հըրամաններով և բանտի մարդասպաններու ու աւազակներու ձեռքով։

Այս անլուր ու բարբարոս չարչարանքները սկսան գործադրուիլ տարեգլխի և ծննդեան տօնի գիշերները։ Բանտի գոհերն սակայն Թողունք բանտի մէջ և այս պահուս քիչ մը բանտէն դուրս ելնենք և տեսնենք թէ ինչեր կը կատարուէին Կեսարիոյ մէջ և անոր շուրջ գըտնուող հայաշատ գիւղերը։ Կեսարիոյ Թիւրքերը կը միանան մօտակայ Հ ա ճ ը լ ա ր կոչուած գիւղի Թիւրքերու հետ և կը մտնեն քաղաքի մօտիկ Հայոց այգիները. Նախ կը ջարդեն ու կոչնչացնեն անոնց ամբողջ բուսականութիւնը, ապա կրակի կուտան գեղեցիկ տուներն ու ամրոցները և յետոյ սպառնական դիրք կը բռնեն Կեսարիոյ քաղաքի Հայերու վրայ յարձակելու միտումով։ Եւ նոքա սրերով, բրերով, զէնքով կը յարձակին Հայերու տներն ու խանութները Թալնելու և Թ է ք է Ե օ ն ու ըսուած շուկան, խանութները ու ս է ր կ ի-ները կը կողոպտեն, կը փշրեն, Հայերու վրայ ալ յարձակելով կը զարնեն, կը ծեծեն, կը կոտորեն։ Է ֆ ք է ր է մեծ գիւղէն ալ ձայն կուգայ, թէ կոխուեցաւ պաշըպօզուք Թիւրքերու կողմէն, Հայոց հարսերը լլկուեցան, կոյսերը պըղծուեցան, տղամարդիկ ծեծուեցան ու սպանուեցան, եւ ապա կացիններով դռները խորտակելով՝ շալակներով ու տոպրակներով Հայոց տուները կողոպտեցին. և այդ բոլորը տուներու մէջ քանի մը խիստ փնտռուած յեղափոխական բռնելու պատրուակաւ՝ միացած կառավարութեան պաշտօնեաներու հետ և գ ո ր ծ ե լ ո վ սոցա հրամաններուն համեմատ։ Եւ ատոր փոխանակ սայլերով լեցուն և երբեմն ալ յետիոտն ամէն կողմէ և ամէն գիւղերէ Հայեր լեցուեցան բանտի բակն ու ներսը. մինչեւ. անգամ բանտի գարշահոտ ճ ե մ ի շ ն ե ր ն ու արտաքնոցներն ձերբակալուած Հայերու համար ննջարան-

ներ եղան և բանտի բացօդեայ բակը պատուհաններէ կա-
պուած՝ շղթայուածներու համար պատսպարանաց տեղի.
Թշուառ բանտարկուածներն իրենց քսակներն ու արժէ-
քաւոր ինչ որ ունէին կամայ ակամայ բանտի մարդաս-
պաններին յանձնեցին, որպէսզի գէթ արծաթի գնով
գնեն մի քիչ հանգիստ։ Ոմանք ալ բանտարկուե-
ցան ածուխի շտեմարաններու մէջ, և այդ օրը յատկա-
պէս ածուխ գնուեցաւ և այնտեղ ձգուողներուն վրայ
ածուխ, ջուր և կաղ միասին թափուեցան ու սրսկուե-
ցան։ Այդտեղ բանտարկուած սիրուն պատանիներն, պատ-
ուաւոր վաճառականներն ու երիտասարդները յետոյ դուրս
ելան այդ տարօրինակ ու նորահնար բանտէն իբրեւ մի
-մի ուրուականներ և աղտոտ, փիս խափշիկներ։ Աստ ա-
ռաջ կը բերեմ բանտարկուածներէն անոնց անունները,
որք ամենէն խիստ տանջանաց ենթարկուեցան Թիւրք
պաշտօնեաներու կողմէ։

1) Շ ա ւ ա ր շ  Ե ս ա յ ե ա ն, Թալասցի, 40 տարե-
կան, 4 զաւակներու տէր, տեսուչ և ուսուցիչ Վարդ-
պատրիկեան վարժարանի, վկայեալ ուսումնական խորհրը-
դոյ կենտրոնական վարչութեան կողմէ։ Սա առաջինն եղաւ
Կեսարիոյ եւ Նորա շրջակայից բանտարկելոց մէջ. տա-
րեգլխի առաջին գիշերը, ժամը 7-ին, երկու հարիւ-
րապետ, ընդհ. դատախազի օգնական և 30 զինեալ ոս-
տիկաններ սորա տունը կը կոխեն, բոլոր գոյքերն, ար-
կղներն ու սնտուկները թափելէ ու որոնելէ յետոյ, նըս-
տարանները և մինչեւ իսկ առաստաղները կը խորտա-
կեն բան մը փնտռելու պատրուակով և իր գրական բո-
լոր թղթերն ու գրքերը միատեղ առած, զինքն ալ կը
ձգեն բանտը, 48 ժամ շարունակ անօթի ու ծարաւ կը
պահեն և 6 օր խոնաւ մերկ գետնի վրայ կը պառկե-

ցուններ, չը խնայելով նաեւ գաւազանի հարուածները։

2) Սարգիս Թէգէեան, Թալասցի, 41 տարեկան, կրկին զաւակներու տէր։ Վայրագ գանակոծութենէ յետոյ ցեխի մէջ կը նստեցնեն և գլխէն վար սափորներով, ձմեռ ժամանակ, պաղ ջուր կը թափեն. պեխը կիսովին կը փետտեն, թեւերը կապելով՝ գլխիվայր կը կախեն. ծնկներուն մէջ մեծ քար զետեղելով ծունր դնել կուտան, քարէ սափորիկի սրածայր ըմպիչը նըստուկին անցքը կը խոթեն և միւսի բերնին կը փչեն. կը սկսի նորա բերնէն աղբ դուրս գալ, փսխել. ապա տաքցուցած շիշ կանցունեն միզանոցին մէջ և մարմնոյն շատ տեղերը նոյնպիսի շիշերով կայրեն։ Ութ օր շարունակ այդպէս կը չարչարեն և ի վերջոյ ամենաանողորմ ու կեղտոտ գազանութեամբ բռնի կը ստիպեն սորա և Չուքուրլի Ցակոբին պատիւը միմեանց բռնաբարել տալ....

3) Կարապետ Քէրթմէնեան, Թալասցի, 23 տարեկան, ուսուցիչ։ Սորան ալ չարաչար կը գանակոծեն, 4 ժամ ոտքերէն գլխիվար կը կախեն, ջրալից հողի վրայ գիշերը մինչ առաւօտ ծնկներու վրայ կը կանգնեցնեն, վզէն չուան անցունելով՝ գետնին վրայով քարշ կանեն. հազիւ թէ կազատի խեղդամահ լինելէ և վերջն ալ 11 օր ածուխի շտեմարանին մէջ կը փակեն անօթի ու ծարաւ։

4) Ռուբէն Քէհեաեան, Թալասցի, 40 տարեկան, ամուսնացած. անխղճաբար կը ծեծեն, մերկացնելով գլխէն վար ջուր կը թափեն ձմեռ ատեն մը, ծընկներուն մէջ քարեր զետեղելով ծնրադրել կուտան, ցեխի մէջ պառկեցնելով անգթաբար կը կոխոտեն, և այդ քոլորը կը տեւէ 6 օր։

5) Ղազար Վէզիրեան, Թալասցի, 40 տա-

րեկան, զաւակներու տէր. մերկացնելով ստէպ-ստէպ երկար ժամերով կը գանակոծեն մինչեւ արիւն։

6) Արսէն Գալֆաեան, Թալասցի, 33 տարեկան, ամուսնացած. վկայեալ փաստաբան և փոխանորդ կառավարութեան գանձուն. 4 օր առանց հացի և ջրի թողնելէ յետոյ զէնճիրլիք կոչուած շղթաներու և կազի պահարան խցիկի մէջ 11 օր շարունակ կը պահեն գրեթէ մերկ, չոր հացով միայն կերակրելով, անարգալից հայհոյանք տեղալով ազգի, անձնական ու ընտանեկան պատուոյ դէմ։

7) Աբրահամ Խաչատուրեան, Թալասցի, 28 տարեկան, ամուսնացած. կը գանակոծեն խիստ եւ ցեխի մէջ նստեցուցած շամբուրներով կայրեն մարմինը։

8) Հաճը Մաճառեան, կեսարացի, 20 տարեկան. մերկացնելով գլխէն ջուր կը թափեն ժամերով. 4 ժամ ալ ցեխի մէջ ծնրադիր կընեն և տաքցուցած ունելիով ոտքերն ու ուսերը կայրեն։

8) Յակոբ Ճէպիրտէլիքեան, կեսարացի, 30 տարեկան. սա բոլորովին սխալմամբ բռնած էին ուրիշ Յակ. Ճէպիրտէլիքեանի տեղ. 24 ժամ շարունակ ցեխի մէջ մերկամարմին գլխէն վար սափորներով ջուր կը թափեն, ապա մարմնոյ շատ տեղերը ունելիքով կայրեն, միզանոցի մէջ տաքցած շիշ կը խոթեն և այլ շատ չարչարանք կուտան, և միայն յետոյ երբ կը հասկնայ մութեսարրըֆը թէ այդ անմեղը սխալմամբ բռնած են, կը կանչէ իր մօտ և կը բաւականանայ այս քստմնելի խօսքերն ըսելով. „օղլում, հագգընը հելալ էթ, սիզի եանլըշ. կէթիրմիշլէր“ (որդիս, իրաւունքդ նուիրէ, ձեզ սըխալ են բերեր)։

10) Զուքուրլու Յակոբ, կեսարացի, 45

տարեկան, զաւակներու տէր. կը գանակոծուի չարաչար եւ մերկամարմին սափորով միզ կը թափեն, կը լկեն չարաչար. գլխիվայր կը կախեն, բերանը բանալով կը թքնեն, օրերով անօթի կը թողուն. և այդ բոլոր չարչարանքները 12 օր կը տեւէ:

11) Հաճի Ղազար Մաճառեան, կեսարացի, 60 տարեկան, զաւակների տէր. 42 ժամ անօթի կը թողուն բացօդեայ տեղ, ձիւնի վրայ, այնպէս որ սաստիկ կը սառի. միւթէսարըֆ փաշան վախնալով թէ չը մեռնի և գործը ծանրայնայ, թող կուտայ, բայց հազիւ թէ բանտի դռնէն կելնէ՝ խեղճ ծերունին կը մարի ու կիյնայ թաւալելով ձիւնի մէջ. ոստիկաններն բազմութեան առջեւ վերցնելով՝ կը տանեն և կը ձգեն իր տունը:

12) Մարտիրոս Ճիվանեան, էֆքէրէցի, 18 տարեկան, Նոր շրջանաւարտ Մարզուանի անգլիական Անատօլեան գօլէճի. կը մերկացունեն նախ և վայրենաբար կը գանակոծեն, ապա կախաղան կը դնեն և վերըստին կը ծեծեն, այնուհետեւ մերկամարմին կը պառկեցունեն ցեխոտ և ջրալից գետնի վրայ և օրերով անօթի կը թողուն. Նոյն իսկ միւթէսարըֆ փաշան ինքն իր պաշտօնատան մէջ կապտակէ, կը ծեծէ ու կը հայհոյէ թշուառ պատանեակին:

13) Բարսեղ Տէօքմէճեան, կեսարացի, 27 տարեկան. սորան կը մերկացնեն և այնքան խիստ կը գանակոծեն, որ արիւն կերեւայ, կուրծքի ոսկորները կը վնասուին և 15 օր շարունակ առատ արիւն կը թքէ:

14) Յովհաննէս Արզումանեան, կեսարացի, 28 տարեկան. սորան մեղադրելով թէ կեսարացիներու կողմէ գործի մը համար Մարզուանի ընկերութեան պատուիրակ գացած է, աներեւակայելի կերպով կը գա-

նակոծեն. ապա կը մեղադրեն թէ իր, Յովհաննէսի. փաստաբան եղած օրերու մէջ սպանուած Թիւրքն ինքն է սպաննած, մինչդեռ Թիւրքերու կողմէ սպանուած ըլլալն արդէն վաղուց ստուգուած է, և հրացաններու կոթերով զինուորներն անգութ հարուածներ կը տեղացունեն վրան եւ տանջանք մը չը մնաց որ չը տային նորան անդադար։

15) Կիւլպէնկ Համալեան, Թալասցի, 19 տարեկան. ոտքերը շղթայ և ձեռաց վրայ երկաթեայ ծանր ձեռնակապեր դրուելով՝ անօթի ու ծարաւ թողուեցաւ 48 ժամ։

16) Մ՝կրտիչ Սոլիեան, կեսարացի վաճառական, 25 տարեկան. ածուխի շտեմարանը ձգուելով վրայէն պարկերով ածուխ և կազ Թափեցին, և այդպէս ամբողջ 12 ժամ։

18) Յովհաննէս Գարագիւլահեան, Գուլա անուանեալ, կեսարացի, 21 տարեկան. Ֆէյզուլլահ անուն հարիւրապետը սորան կը ձերբակալէ Մանճըրի մէջ եւ ծեծելով կը բերէ մինչեւ Էֆքէրէ եւ այդտեղ կառավարութեան կեդրոնը ախոռի մէջ մէկ ոտքէն գլխիվայր կը կախէ եւ գլուխը կը թաղէ ձիու աղբի մէջ. 24 ժամ այսպէս կախ թողնելէ յետոյ՝ միւս օրը Կեսարիա բերելու ատեն ճամբան միւսթանթըք քեաթիպի (հարցաքննիչ) Ահմէտը ամենայն բռնութեամբ կը փորձէ ստիպել զԳուլա վկայելու համար, թէ Կեսարիոյ այգիի մը մէջ Թիւքի մը սպանութիւնն արած է Յով. Արզումանեանը, սպառնալով թէ եթէ այդպիսի վկայութիւն չը տայ՝ չարչարանաց տակ իրեն սպաննել կուտայ։ Կեսարիայ հասնելէ յետոյ սաստկապէս կը ծեծուի և շատ օրեր ոտքերուն ծանր շղթայ անցու-

ցած՝ անօթի ու մերկ կը թողուն զէնճիրլիք ըսուած խցիկի մէջ։

18) Եղիա Մէշճեան, կեսարացի, 22 տարկ.
19) Կարապետ Փափազեան, պէլէկէսցի, 60 »
20) Սերովբէ Փափազեան, » 33 »
21) Յակոբ Փափազեան, » 34 »

Այս չորս անձերը մինչեւ արիւն կը գանակոծեն և շիշերով ու տաքցած ունելիքներով չարաչար կը տանջեն ամբողջ օրերով։

27) Մամաս Քէօփրիւկեան, պէլէկէսցի, 18 տարեկան. սորան երկար ժամերով կը ծեծեն, տաքցած ունելիքով խիստ կը չարչարեն և ապա մէկ գիշերուան մէջ քանիցս Թշուառի պատիւը կը բռնաբարեն գազանաբարոյ կառավարութեան գազանաբարոյ պաշտօնեայները։

23) Անտօն Ռշտունի, Կ. պօլսեցի, 45 տարեկան, զաւակներու տէր. սա կը ձերբակալուի Էֆքէրէ գիւղի մէջ 500-ի չափ պաշըպօզուքներու և ոստիկան զինուորներու ձեռքով ծննդեան օրերու մէջ։ Այդ վայրենիններու ըրած գործերը Էֆքէրէի մէջ այդ պահուն՝ վերը կարճ գրեցինք։ Բանտը փոխադրելէն յետոյ ամէն տեսակ չարչարանաց տակ կը ձգեն և կը փորձեն Թունաւորել։ Տեսնելով բազմաթիւ անմեղներու կրած տանջանքները, Ռշտունին հարցաքննութեան միջոցին Նոցա արձակումը կը պահանջէ, իր վրայ առնելով բոլոր երեւակայելի յանցանքներ, յայտարարելով թէ ինքն Հընչակեան Կուսակցութեան գործադիր անդամ մ'է եւ միեւնոյն ժամանակ մերկացնելով ու հարուածելով կառավարութեան բռնակալ ու կեղտոտ արարքներն ու բռնած ընթացքը և պաշտպանելով ժողովրդեան անբռ-

նաբարելի ու սուրբ իրաւունքները։ Թէ գործ դրուած քննութիւններու միջոցով և թէ այդ լեզուին համար մեծ կարեւորութիւն մը ստացաւ Ուշտունիի ձերբակալումը։

Իսվէրէկի բանտին մէջ ջաղացպան Ա ր ի ս տ ա կ է ս անուն 45 տարեկան անձը ամբաստանուելով նոյն տաճկական „յայտարարութեանց„ խնդրով, թէ իբր ինքն ալ փակցուցած է, անմեղ տեղը ամենասոսկալի անարգանքներու և տանջանքներու մատնած են. Նախ 10-ի չափ ոստիկաններ բանտի մէջ պատիւը կը բռնաբարեն և յետոյ 4 օր վզէն կը կախեն՝ անօթի ու ծարաւ պահելով։ Գրեթէ մերձիմահ՝ կաղաչէ որ իրեն ջուր տան. ոստիկան մը ջրով լի սափորը կը մօտեցնէ և գլխուն զարնելով սափորը կը կոտրուի և թշուառի գլուխը կը վիրաւորուի։ Տեղակալին լուր կը տրուի թէ Արիստակէսը մեռնելու մօտ է. այդ ժամանակ կախուած տեղէն վար կառնեն և իբր մեռեալ, մերկամարմին, ձիւնի մէջ կը թաղեն ժամերով, մինչեւ որ կիմացուի թէ թշուառը բոլորովին անմեղ է և վախնալով մահէն, անմիջապէս կարձակեն։

Իսվէրէկ բռնուածներու մէջ կը գտնուէր նաեւ կին մը՝ տիկին Ս ր բ ո ւ հ ի Ք է լ լ է ճ ե ա ն։ Այս դժբաղդ կինը բանտի մէջ շատ տանջանքներ կրելէ վերջ, հակառակ իր արձակած աղիողորմ ճիչերուն ու լացին, ութ գազանաբարոյ ոստիկաններու կողմէ բաց տեղ մը կը տարուի և վատաբար կը լլկուի։

Նկարագրելով բանտարկուածներու այս սոսկալի չարչարանքները, որ հրէշաւոր կառավարութիւն մը կը կատարէ, նկարագրեմ նաեւ փետրուար 16-ի արարողութիւնը, որ նուազ սոսկալի չէր. այն է մեր փոխադրութիւնը Կեսարիոյ բանտէն Գաղատիոյ բանտը։ Այդ

թուին կէս գիշերն անցած՝ ժամ մէկին, ամենք 200 հոգի Կեսարիոյ բանտն ենք դեռ, երբ յանկարծ ահարկու ձայնով մը բանտի դռներն կը բացուին, կոշտ ու կոպիտ բանտապանները եւ զինուորները հրմշտկելով կարթնցունեն մեզ և կէս քուն՝ կէս արթուն կը հանեն մեզ մեր անմոռանալի անկողիններէ. ոմանք չիմանալով ինչ կայ՝ այլայլեալ կը մարին կիյնան, ոմանք կը դողան ահ ու սարսափի մէջ, ոմանք հնազանդելով իրենց բաղդին խոժոռ լռութեան մը մէջ կելնեն: Վերջապէս կը հանուինք բանտէն դուրս. իւրաքանչիւրի վզին ու ձեռքերուն շղթայ և ձեռնկապ դրուելէ յետոյ, զոյգ-զոյգ և երբեմն 4-5 հոգի իրարու կը կապուին և այս կառավարութեան դռնէն դուրս կը հանուինք: Ո՛չ ոք գիտէ թէ ուր կը տարուինք, երբ մէկէն կը տեսնենք այնտեղ նախապատրաստուած կառքերու երկայն շարք մը: Զինուորներու ու ոստիկաններու անպատուաբեր աջակցութեամբ կը լցուինք այդ չոր ու մերկ կառքերու մէջ, ոչ մաշկեակ կամ վերմակ, ոչ բազմոցի նման բան մը եւ ոչ իսկ ցրտին ու ձիւնին դէմ պատսպարելու ծածկոց մը. շատերուս ոտքերն են բոպիկ եւ գլուխը բաց, որովհետեւ աղօտ ճրագով, խորամութ բանտի մէջ հագիւ թէ վրանիս հագնելու միջոց ունեցանք, այնքան աճապարել կուտային մեզ: Վերջապէս գիշերուան խորին մթութեան մէջ, սաստիկ ձմեռով մը այդպիսի վիճակով ճամբայ ելանք՝ հեծեալ բազմաթիւ ոստիկաններու, պաշտօնեայներու և զինուորներու հսկողութեամբ, բայց ո՞ւր՝ ոչ ոք գիտէր. կառուղին միայն կիմացներ մեզ թէ Գաղատիա կերթանք, որ կառավարութեան կեդրոն է Կեսարիոյ և Եօզկաթի համար: Ամբողջ եօթն օր այդպիսի դժբաղդ և վերջին ծայր թշուառ ճանապարհորդութիւնն ըրինք,

երեկոները գոմերու մէջ, հսկողութեան տակ և քարերու, յարդերու, հողերու և աղբերու վրայ, իսկ ցորեկները ցրտաշունչ քամիէն, փոթորկէն, ձիւնէն ու անձրեւէն կառքերու պատառոտած ու խարխուլ ծածկոցներու տակ կքած ու չորցած՝ վերջապէս հասանք Գաղատիայ ուղղակի բանտը։ Ճանապարհի չարչարանքներն ու տառապանքները լաւ հասկցնելու համար բաւական է ըսել, որ Գաղատիոյ վատ բանտն արքայութիւն երեւցաւ մեզ ամենուս համար։ Անցան ժամանակներ, օրեր, ամիսներ, որ կը գտնուէինք այստեղի բանտին մէջ և կը սպասէինք մեր դատավարութեան, որ մօտերս պիտի տեղի ունենայ։ Բայց այդ սպասումին մէջ մենք մեր ընկերներէն պիտի կորցնենք, որովհետեւ շատերը խիստ հիւանդացած են և այս օրերս յոյժ ցաւալի կորուստ մը ունեցանք. մեռաւ Արսէն Տէօքմէճեան անուն 23 տարեկան երիտասարդը, որոյ ընդունակութիւններն ու բնութեան ազնուութիւնը խիստ սիրելի էին և ապագայ մը խոստացող։ Արսէնը շատ չարչարանքներ կրեց բանտին մէջ. նա շատոնց արդէն հիւանդ կերեւէր, երբ մէկէն վերջին 15 օրուայ մէջ հիւանդութիւնը սաստկացաւ և մահը յափշտակեց։ Խեղճը իրմէ մեծ եղբայր մը ունէր բանտի մէջ, բայց ոչ եղբայրը և ոչ այլ ոք թող տուին տեսնուիլ հետը....

Ահա մեր վիճակը։ Դառն է մեր ճակատագիրը— մենք գիտենք, բայց ամենատմարդի անձն ալ կը խոստովանի, որ յիրաւի, եթէ դժոխք մը կայ, այդ դժոխքը տաճկական բանտերու մէջն է. եթէ միջնադարեան էնքիզիթօրներու տուած չարչարանքներէն աւելի սոսկալին կուզեն տեսնել—կը գտնեն այն տաճկական բանտերու մէջ. եթէ մարդկային անձի ստորացման ամենագազա-

նային տեսակը կուզեն — կը տեսնեն այն տաճկական բանտերու մէջ։ Կը կրկնենք, չենք տրտնջար մեր ճակատագրին դէմ, բայց նոյն իսկ տաճկական հարցաքննութիւններն ապացուցին որ օ ր է ն ք ո վ մեղք չեն կրնար մեր վրայ բարդել և իսկապէս միայն մի քանիներու դէմ տաճիկը կրցաւ իր քէֆին համաձայն յանցանքներ հանել։ Այդ “յանցաւորները„ սակայն տրտնջող չեն բնաւ. եթէ նոքա ընտրած էին մի “փշոտ ճանապարհ„, նոքա ալ գիտէին անշուշտ, թէ ինչ սարսափելի ձախորդութիւններ կը սպասեն իրենց, և այս վայրկեանիս նոքա բան մը միայն կը բաղձան. այն որ բոլոր աշխարհ լսէ բանտարկուածներու արդարութիւն պահանջող ձայնը և դոցա չարչարանքներու ճիչերն ու շղթաներու աղմուկը. որ հայ ժողովուրդն իր մէջէն միշտ նորանոր ոյժեր առաջ բերէ իր արդար դատի պաշտպանութիւնը յառաջ մղելու համար. որ հայութեան այնքան զաւակներու կորստեան վրէժը միախառնուի սուրբ պատերազմի պահանջին հետ և միանգամէն ընդ միշտ ջարդէ այն շղթաները, որք այսօր մեր վզին, ձեռքերուն ու ոտքերուն վրայ կը ծանրանան եւ կը տանեն մեզ մահուան դուռը. . . . . . .“

## ԳԱՂԱՏԻԱՅԻ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ.

Վեց ամիս բանտարկված վիճակում պահելուց և վերև նկարագրված անասելի տանջանքների ենթարկելուց յետոյ՝ վերջապէս 1893 թ. Մայիս և Յունիս ամիսներում դատի ենթարկվեցան 56 հոգի, որոնցից 14-ը անպարտ արձակվեցան, իսկ մնացած 41 հոգին՝ իբրև անդամներ Հնչակեան կուսակցութեան՝ ամբաստանված այլ և այլ յանցանքներում, դատապարտվեցան 17 հոգի՝ մահուան, 6 հոգի՝ 15 տարուայ, 8 հոգի՝ 10 տարուայ և 10 հոգի, որոնց մէջ մի կին, 7 տարուայ բերդարգելութեան։ Վերջը, Սեպտեմբեր ամսում, Տ ի գ ր ա ն Կ ի ւ լ պ է ն կ ե ա ն, մարզուանցի, 25 տարեկան, ուսուցիչ, ևս դատապարտվեցաւ 10 տարուայ բերդարգելութեան։

Այդ դատավարութեան ընդարձակ տեղեկագրութիւնը, որ իր ժամանակին զետեղվեցաւ “Արեւելքի”, “Հայրենիքի” մէջ եւ տաճկական թերթերում, կանխապէս գրված ու խմբագրված էր Թիւրք կառավարութեան ձեռքով, որը ջանացել էր դուրս նետել՝ գըրգոյքիս մէջ զետեղված՝ այն մի շարք գեղեցիկ պաշտպանողական ճառերը, որ արտասանել էին դատավարութեան միջոցին ամբաստանվածներից ոմանք, և անխնանալի կերպով խեղաթիւրել, աղաւաղել էր հայ ամբաստանվածների ասածները թէ նախնական հարցաքննութիւնների և թէ դատավարութեան միջոցին։ Տաճիկ կառավարութեան այդ տեղեկագրութեան մէջ որքան էլ ա-

մեն ջանք թափված է տարօրինակ, տգեղ, ստայօդ, երբեմն մինչեւ իսկ վատ ներկայացնելու Հայ ամբաստանվածներին, այնուամենայնիւ ուշադիր ընթերցողը նոյն իսկ տաճկական տեղեկագրութեան մէջ կը գտնէ շատ կէտեր, որոնց մէջ պարզ երեւում է ամբաստանվածների կատարեալ ազնուութիւնը և հարցաքննութիւններում, տանջանքների տակ ու դատավարութեան մէջ նրանց բռնած օրինակելի, անվախ ու գեղեցիկ ընթացքը։ Այստեղ սակայն պէտք է ասենք, որ այդ 41 ամբաստանվածներից դուրս կար մէկը, կեսարացի Ռ ո ւ բ է ն Ճ է վ ա հ ի ր ճ ե ա ն անուն անձը, որ տեղեկագրողի (մուխպիր) ստոր դերը կատարեց և դրա համար ազատ արձակվեց, ի հարկէ, իբր քաջալերութիւն իր անամօթ արհեստին։

Ընդմիջապէս ներքեւ առաջ բերելով 41 դատապարտվածների անունների ցուցակը, զետեղում ենք նաեւ մի կարեւոր դօկումէնտ (վկայագիր)՝ — այդ դատապարտվածների տված տեղեկագիրն անգլիական դեսպանին Կ. Պօլսում, տեղեկագիր, որի մէջ իր ամբողջ տգեղ մերկութեամբ երեւան է հանված տաճկական դատարանի, տաճկական արդարադատութեան էութիւնը։

---

## ՑՈՒՑԱԿ ՀԱՅ ԴԱՏԱՊԱՐՏՎԱԾՆԵՐԻ ԳԱՂԱՏԻԱՅՈՒՄ.

### ՄԱՀՒԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՎԱԾ·

1) ԱՆՏՕՆ ՌՇՏՈՒՆԻ, Կ. Պօլսեցի, 45 *տար., խմբագիր և ուսուցիչ։*

2) ԿԱՐԱՊԵՏ ԹՈՒՄԱԵԱՆ, Մարզուանցի, 45 *տար., ուսուցիչ Գօլէժի։*

3) ՅՈՎՀԱՆ ԳԱՅԱՆԵԱՆ, *Մարզուանցի,*
28 *տար., ուսուցիչ գոլէժի։*
4) ՅԱԿՈԲ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ, *Կէմէրէքցի,*
42 *տար., վաճառական։*
5) ԿԱՐՕ ՔԷՐՏՄԷՆԵԱՆ, *Թալասցի,*
24 *տար., ուսուցիչ։*
6) ՄԱՐՏԻՐՈՍ ՃԻՎԱՆԵԱՆ, *Էվքարուցի,*
19 *տար., ուսուցիչ։*
7) ԴԱՆԻԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ, *Տէրէվանքցի,*
42 *տար., վանահայր։*
8) ԿԱՐԱՊԵՏ ԱԼԱՃԱՃԵԱՆ, *Կեսարացի,*
28 *տար., վաճառական։*
9) ՅԱԿՈԲ ՃԷՊԻՏԷԼԻՔԵԱՆ, *Կեսարացի,*
30 *տար, շաքարավաճառ։*
10) ԲԱՐՍԵՂ ՏԷՕՔՄԷՃԵԱՆ, *Կեսարացի,*
27 *տար., վաճառական։*
11) ՄԻՍԱԿ ՔԷՉԷՃԵԱՆ, *Եօզկաթցի,*
34 *տար., ուսուցիչ։*
12) ՄԻՍԱԿ ԵԱՋՐՃԻԵԱՆ, *Թալասցի,*
23 *տար., կառապան։*
13) ԹՈՐՈՍ ԾԱՌՈՒԿԵԱՆ, *Կիւրիւնցի,*
22 *տար., վաճառական։*
14) ԿԻՒԼՊԷՆԿ ՀԱՄԱԼԵԱՆ, *Թալասցի,*
20 *տար., հիւսն։*
15) ՅՈՎՀ. ԱՐՁՈՒՄԱՆԵԱՆ, *Կեսարացի,*
28 *տար., քանդակագործ։*
16) ՄԻՀՐԻՃԱՆ ԽԱՆԱՊԱԽԵԱՆ, *Թալասցի,*
24 *տար., հիւսն։*
17) ՓԱՆՈՍ ԵԱՂՈՒՊԵԱՆ, *Թալասցի,*
30 *տար, հրացանագործ։*

## 15 ՏԱՐԻ ԲԵՐԴԱՐԳԵԼՈՒԹԵԱՆ·

18) Մկրտիչ Փափազեան,
Մարզըւանցի, 28 տար., խանութպան։
19) Յարութիւն Գարակեօզեան,
Մարզըւանցի, 25 տար., խանութպան։
20) Մարտիրոս Գալուստեան,
Կէմէրէքցի, 40 տար., քարոզիչ։
21) Գաբրիէլ Վարդուկեան,
Էվէրէքցի, 28 տար., կօշկակար։
22) Կարապետ Կիւրինեան,
Թալասցի, 26 տար., Նամակաբաշխ։
23) Յակոբ Թապաղճեան,
Թալասցի 42 տար., ժամագործ։

## 10 ՏԱՐԻ ԲԵՐԴԱՐԳԵԼՈՒԹԵԱՆ·

24) Սենեքերիմ Քէպապճեան,
Եօզկաթցի, 23 տար., ուսուցիչ։
25) Միհրան Վարդանեան,
Զօրումցի, 28 տար., խանութպան։
26) Յակոբ Տէօվլէթեան,
Պալակասցի, 44 տար., խանութպան։
27) Ստեփան Պօյաճեան,
Էվէքարացի, 25 տար., Հարկահան։
28) Մուշեղ Զօրլուեան,
Եօզկաթցի, 30 տար., կաղապարիչ։
29) Յակոբ Զօլաքեան,
Կեսարացի, 25 տար., կօշկակար։
30) Մամաս Ունանեան,

կեսարացի, 22 տար., մսավաճառ։

31) Յարութիւն Սիմօնեան,
Թալասցի, 48 տար., ապխտարար։

## 7 ՏԱՐԻ ԲԵՐԴԱՐԳԵԼՈՒԹԵԱՆ·

32) Տիկին Սրբուհի Քէլլէճեան,
Էվէրէկցի, 26 տար., տանտիկին։

33) Արսէն Գալֆաեան,
Թալասցի, 33 տար., փաստաբան։

34) Շաւարշ Եսայեան,
Թալասցի, 40 տար., ուսուցիչ։

35) Ղազարոս Ատրկան,
Հաճիգիւղցի, 24 տար., խանութպան։

36) Գալուստ Ուզունեան,
Հաճիգիւղցի, 25 տար., վաճառական։

37) Սարգիս Միտիլեան,
Հաճիգիւղցի, 30 տար., ուսուցիչ։

38) Խաչատուր Օղլագճեան,
Հաճիգիւղցի, 35 տար., ոստայնանկ։

39) Յովհաննէս Տիրացուեան,
Կէրմիրցի, 33 տար., կառապան։

40) Դանիէլ Գասաբարսեղեան,
Կեսարացի 26 տար., ոստայնանկ։

41) Յովհաննէս Գարաքիւլահեան,
Կեսարացի, 21 տար., սպասաւոր։



## ՏԵՂԵԿԱԳԻՐ

### ԱՆԳԼԻԱԿԱՆ ԴԵՍՊԱՆԻՆ․

Տէր,

Ինչպէս յայտնի է ձեր բարձրութեան, թուականէս իբր վեց ամիս առաջ փոքր Ասիոյ ներքին կողմերը տեղ տեղ թրքական յայտարարութիւններ փակցուեցան եւ փակցուելէն անմիջապէս յետոյ ձերբակալութիւնք տեղի ունեցան։ Ձերբակալելոց թիւը հասաւ գրեթէ 600ի, որոց ամենքն Հայ էին։ Կառավարութիւնն ամենախիստ միջոցներու և անլուր չարչարանքներու գործադրութեամբ խնդրոյն սա գոյնը տուաւ, թէ այս գործ Հայ Գօմիթէի հեղինակութիւն է (թէեւ բուն իրողութիւնն այն էր թէ՝ գոքա թուրք աղբիւրէ մը կուգային)։ Քննութիւնք ամիսներ շարունակեցին և հուսկ ապա անկարեւոր և կամ անպարտ համարուածներ Զատկի տօնի առթիւ արձակուելէ յետոյ՝ շուրջ 80 հայեր, զանազան տեղերէ, իբր գործի հեղինակներ, գրգռիչներ ու յեղափոխականներ ամբաստանուելով՝ բարձրագոյն հրամանաւ Գաղատիոյ դատարանին առջեւ հրապարակային դատաստանի ենթարկուեցան։

Այն այս խնդրոյ համար „հրապարակային“ անունը, „քաղաքական ատեանը“ նորութիւն պէտք է համարել. թէեւ մենք չէինք կրնար հաւատալ թէ այս դատ հրապարակապէս պիտի լսուի և արդարապէս որոշում տրուի, բայց մի քանի պարագաներ, որպէս են մասնաւոր հրաւիրելոց, ամեն ազգի կրօնական առաջնորդաց և

ժանաւարդ Անգլիական հիւպատոսի՝ ներկայութիւնք, պահ մը կարծել տուին մեզ թէ կառավարութիւնը վերջնականապէս ժողովրդեան տրտունջը լսելու և խնդիրը հիմնովին ուսումնասիրելով՝ արդարացի կերպով դատելու և գործը գոհացուցիչ կերպով կարգադրելու մի միտում ունեցած լինի. հետեւապէս ուրախութեամբ և ամեն ինչ համարձակ խօսելու պատրաստութեամբ մտանք դատաստան։

„Նախնական դատաստանի մեզ նկատմամբ գոյացուցած կարծիքը և որոշած մեղապարտութեան աստիճանը այս էր. „Ձերբակալուած հայեր և իրենց հետեւողներ նպատակ ունենալով մի ինքնուրոյն իշխանութիւն ու հայրենիք ձեռք բերելու, առ այս յանդգնած են յեղափոխական ընկերութիւններ կազմել, որպէսզի Թուրքիոյ մէջ գտնուած հաւատարիմ հայ հպատակները զինու զօրութեամբ ապստամբեցունեն օսմանեան գահուն դէմ. եւ սոյն վախճանին հասնելու համար սկսած են արդէն գումարումներ ընել, դրամ՝ հաւաքել, զէնքեր և հրոսակային խումբեր պատրաստել, մարդասպանութիւններ գործել, տէրութեան փոստարանը զարնել, ևն., ևն.“ Ահա այս ենթադրութեամբ՝ պատժական օրինաց 58-րդ Յօդուածի տրամադրութեան համաձայն՝ ձերբակալելոց իւրաքանչիւրին պատժուիլը կը պահանջուէր՝ աստիճանաբար. որպէս յայտնի է, սոյն յօդուած 8—15 տարի եւ մի մասն ալ յաւիտենական բերդարգելութեան կը տրամադրէ. այս վերջինը նշանակուած էր մեզ բաժին։

Ամեն ինչ պատրաստ էր. դատարանի կողմէն օրինական փաստաբաններ կարգուած էին ամբաստանելոց պաշտպանութեան համար. ամեն կողմէն մի առ մի բերուած էին վկաներ, թուով իբր 35, որոց ամենքին (ի բաց

առեալ մի քանի Թուրք սուտ վկաներ) նոյն խնդրոյ համար ի սկզբան բանտարկուած և ապա Ջատկի տօնի առթիւ ներումով արձակուածներ էին։ Եւ ահա սկսաւ դատավարութիւնը մայիս 1-ին։ Դատավարութեան ամբողջ միջոցին ընդհանուր դատախազը (հայատեաց մի քուրդ) ամբաստանեալոց սաստիկ հակառակ խօսեցաւ. իւր բոլոր խօսքեր Թիւրք հասարակութիւնը քրիստոնէից դէմ գրգռելու յայտնի բնութիւնը ունէին։ —Վըկաները լսելու առթիւ ատեանը ամբաստանեալոց և փաստաբանից կրկնակի պահանջմանց վրայ, յետ առանձին երկար խորհրդածութեան՝ արդար որոշում և վճիռ մը յայտնեց, որոյ համեմատ „վկայից ոչ թէ նախնական հարցաքննութեան միջոցին ճնշման ու թելադրութեան ներքեւ ըսածները, այլ եւ յաւէտ դատարանի առջեւ երդմամբ ըսածները վաւերական պիտի համարուին։“ Բայց այս որոշում թուղթի վրայ մնաց. եւ ահա իսկոյն զգացինք մեր յուսախաբութիւնը և յայտնի եղաւ որ ներկայ դատաստանն ալ, ճիշդ ուրիշ անգամներ եղածներու պէս, հակառակ օրինաց և արդարութեան՝ ամեն ձայն խեղդելով, խնդրոյն դարձեալ իրենց ուզած գոյնը տալով, զամենքը դատապարտելու սահմանեալ էր, և եղածները եւրոպական կառավարութիւնները խաբելու համար լոկ ձեւակերպութիւններ էին։ Եւ ալ ինչո՞ւ զարմանանք. ո՞չ ապաքէն նոյն իսկ Պօլսոյ մէջ, եւրոպական տէրութեանց ներկայացուցիչներու աչաց առջեւ, մի եւ նոյնը տեղի ունեցաւ Մուսայ պէկի հարածանօթ գայթակղալից խնդրոյն առթիւ։

Պէտք էր տեսնել ամբաստանեալոց աղէկտուր վիճակը. սպանդանոցի մէջ դիզուած ոչխարներու կը նմանէին. իւրաքանչիւրն իր կարգին կը ջանար իր անմեղու

թիւնն հաստատել, Նախագահին խղճին կոչում կընէր ի զուր կը ճգնէին ոմանք հասկցունել թէ իրենք ամենադառն տանջանքի ներքեւ խոստովանութիւններ ըրած կամ յերիւրած և մասնաւոր հրահանգի համեմատ ուրիշները զրպարտած էին. և ոմանք՝ թէ իրենք նպատակ չունէին օսմանեան կառավարութեան դէմ ապըստամբելու կամ առանձին իշխանութիւն ու հայրենիք կազմելու, այլ իրենք պարզ բողոքողներ էին կառավարութեան ապօրինութեանց դէմ, պաշտօնէից բացարձակ իգործ դրած զեղծմանց ու կեղեքմանց դէմ, և ընդհանրապէս երկրին ամեն կողմը տիրող՝ ընչից, կենաց և պատւոյ անապահովութեան դէմ, և թէ՝ իրենց այս տեսակ ընկերութիւններ կազմելուն՝ նոյն իսկ այս կարգի անտանելի անտեղութիւններն առիթ էին տուած, և թէ իրենք երկրին թշնամի խռովարարներ չեն, այլ բարեկարգութեան ցանկացող՝ ամենահաւատարիմ բարեկամներ են հայրենեաց, եւն. եւն. Դատարանի կողմէն այս կարգի անկեղծ և համարձակ անձնապաշտպանութիւններ կընդմիջուէին, փաստաբաններու խնամքով պատրաստուած ճառեր կրճատուեցան, ամբաստանելոց մի քանիներու կողմէն արտասանուելիք ճառերու հազիւ մէկ մասը լսեցին *), սաստիկ զայրացան և ուզեցին շտապաւ լմնցունել դատը՝ գայթակղութեան տեղի չը տալու համար, ամեն միջոց գործածեցին համարձակախօսները լռեցունելու և դատը ըստ հաճոյս խեղաթիւրելու։ Եւ ահա կը ցաւինք ըսելու, յաջողեցան յայսմ, խնդրոյն բոլոր-

---

*) Թէեւ համարձակախօսներ ամեն առիթ յօգուտ գործածելով՝ խօսեցան աներկիւղ ինչ որ կուզէին յայտնել հրապարակաւ։

վին տարբեր գոյն տալով. եւ վերջապէս մայիս 29-ին նախագահը գոչեց „դատաստանը վերջացած է“։ Ասկէ երկու օր վերջ, այն է Մայիս 31/12 Յունիս, երկուշաբթի օր, մեզ նկատմամբ արձակուալիք դատավճիռները լսելու տարուեցանք։ Ամբաստանեալոց նստարաններուն վրայ 56 հոգի էինք. մեծ բազմութեան մը առջեւ վճիռներ արձակուեցան վերջապէս. 14 անձեր անպարտ արձակուեցան. 10 հոգի (մին՝ կին) 7-ական տարուան, 8 հոգի 10-ական տարուան, 6 հոգի 15-ական տարուան բերդարգելութեան, և 17 հոգի ալ մահուան դատապարտուեցան՝ պատժական օրինաց 54րդ յօդուածի յաւելուածոյն տրամադրութեամբ. 1 հոգի, կեսարացի Ռուբէն Ճէվահիրճեան, տեղեկագրողի (մուխպիր) դեր կատարած ըլլալուն համար ազատ արձակուեցաւ. և համարձակախօսներէն մէկը, Քերովբէ Փափազեան, կանխաւ հեռացուցին տեղէս, և ըսին թէ „խելաց խանգարում ունենալուն համար Պօլսոյ Ցիմարանոցը ղրկուած է դարմանուելու“ (...). եւ դեռ 30 ի չափ հայեր, ժամանակէ մը ի վեր ձերբակալուած, իրենց կարգին կըսպասեն դատուելու։

Ահա այս է խնդիրը իր պարզութեան եւ ճշմարտութեան մէջ։ Պատիժներ կարի ծանր եւ անգթօրէն տնօրինուեցան. բաց աստի, բացարձակ զեղծումներ եւ անիրաւութիւններ ի գործ դրուեցան. զայս կըսենք մենք և կը հաստատէ հասարակաց կարծիք, մինչեւ իսկ թուրք հասարակութեան սակաւաթիւ խղճամիտ դասին կարծիքը։

Ու ահա ներփակեալ կը յղենք ձեր բարձրութեան՝ բանտի մէջ և բանտէն դուրս ի գործ դրուած տանջանաց և խժդժութեանց ցանկերը հանդերձ պարագայիւք. ինչպէս նաեւ ընդմիջեալ պաշտպանողական ճառեր, ո

*րոնք ճոխ լոյս կրնան սփռել մեր արդար պահանջի և հետեւած ուղղութեան վրայ։*

*«Ներկայացնելով զայս ձեր բարձրութեան՝ կուգանք խոնարհաբար խնդրելու որ շնորհ ընէք գործել ի փրկութիւն մեր և ի փառս անգղիական մեծազօր ազգին։*

*Գաղատիոյ Դատապարտեալք.*

*Յունիս* 6—18, 1893.

*Բանտ Գաղատիոյ.*

# ՊԱՇՏՊԱՆՈՂԱԿԱՆ ՃԱՌԵՐ.

## ՊԱՇՏՊԱՆՈՂԱԿԱՆ ՃԱՌ ԱՆՏՈՆ ՌՇՏՈՒՆԻԻ

— Կ. Պոլսեցի —

*Տէր Նախագահ,*

*Քաղաքական շատ ծանր յանցանքի ամբաստանութեամբ հինգ ամիսէ ի վեր ձերբակալուած ու բանտարկուած եմ. իմ մասին եղած քննութիւնք թէեւ աւարտեցան ու դատաստանական գրութիւնք ատեանէդ բովէն անցան, բայց տակաւին ներկայ խնդրոյս իրողութիւնը, նորա սկզբունքն ու ճշմարիտ նպատակը երեւան չեկան. դոքա թանձր քօղի մը ներքեւ ծածկուած կը մնան. և այսպէս, բուն խնդրի մասին խառնակ ու շփոթ գաղափարներ կը տիրեն հետաքրքիր անհատի գլխուն մէջ, յուզուած ժողովրդեան և մինչեւ կառավարութեան բոլոր շրջանակաց մէջ։*

*Կիմանամ ինձ տրուած ամբաստանագրէն, որ քաղաքական յանցաւոր մը կը նկատուիմ ես, առաջին կարգի ոճրագործ մը, և ուստի դատապարտելի, ըստ տրամադրութեան պատժական օրինաց 58 յօդուածի *)։ Եւ*

---

**) Սոյն յօդուած քաղաքական յանցաւորներու յան-*

սակայն արդար օրէնք թոյլ չեն տար դատապարտել զոք՝ առանց նորա մասին եղած ամբաստանութիւնները միառ-մի, ուշի ուշով հաստատելու, և կամ առանց ամբաստանեալի կողմէն ի մէջ բերուած պատճառաբանութիւններն ու հերքումներն ի նկատի առնելու։ Եւ ճիշդ այդ նպատակի համար սահմանուեցաւ սոյն հրապարակային դատաստան. այդ նպատակի համար ատեանդ շնորհեց փաստաբաններ իւրաքանչիւր ամբաստանեալի, և հիմա հասած է ժամը պարզելու ներկայ խնդրոյս իրողութիւնըն ու նպատակը։ Ուստի կը խնդրեմ, ի նկատի առէք այս մասին տալու բացատրութիւններս, հանդերձ մանրամասն պարագայիւք։

Տալու բացատրութիւններս, մէկիկ մէկիկ դրական փաստերով փաստուած ու կենդանի ապացոյցներով հաստատուած, իրենց նպատակ ունին լուսաւորելու մութ գաղափարներ, յստակելու պղտոր ու շփոթ կարծիքներ, պարզելու կառավարութեան կասկածն ու երկիւղը ծանօթ խնդրոյ մասին, ցուցնելու հանրութեան թէ ես և իմ ընկերք՝ ոչ թէ քաղաքական „յանցաւոր", հայրենեաց թշնամի „ոճրագործներ" ենք, այլ հակառակը, սա նուիրական հայրենեաց և առհասարակ եղբայր հայրենակցաց շահը, հանգիստն ու բարօրութիւնը ցանկացող և առ այն՝ ոգի ի բուին ճգնող՝ հարազատ զաւակներն ու հաւատարիմ մշակներն ենք հայրենեաց։ Հաստատապէս համոզուած եմ, որ յայնժամ միայն, երբ, ի դարմանումըն չարեաց, ձեռնարկուին և գործադրուին ազգու, հիմնական միջոցներ, յայնժամ միայն այս և սորա նը-

---

ցանքին համեմատ՝ աստիճանական, իսկ ծանրագոյնին ցըկեանս բերդարգելութեան կը տրամադրէ։

ման խնդիրներ կը դադրին գոյութիւն ունենալէ։

Թէ կայ երկրիս մէջ մի խնդիր՝ հասարակաց միտքերը յուզող և Օսմանեան կառավարութիւնը զբաղեցնող, այն ալ է Հայկական խնդիրը, որու նմաններ ատեն ատեն յերեւան եկան Յունաստանի, Սերբիայի, Բօլղարիայի եւն խլրտմանց առիթով։ Յեղափոխութիւն, ապստամբութիւն, այո՛, այդ է միակ զէնքը և սուրբ իրաւունքը ճնշեալ ժողովրդի մը. բայց, կըսեմ համարձակ, Թիւրքական լուծէն ջանալով ազատիլ, հայ իշխանի մը, հայ ամիրաներու լուծին քաղցր ըլլալը չենք ըսեր և չենք ուզեր այն։ Ամեն լուծ, օտարին կամ հարազատ, միշտ միակերպ ծանր է։ Այլ մենք, համարձակօրէն կըսեմ՝ յանուն ներկայացուցած Հնչ. Կուսակցութեանս, կուզեմք ձեռք բերել քաղաքական կատարեալ ազատ կացութիւն մը, որ աշխատաւոր ժողովրդեան համար նպաստաւոր օրէնքներ ըլլան տնտեսական և քաղաքական, որով նա կարենայ աւելի յառաջադիմել՝ մինչեւ իր կատարեալ ազատումը։ Հակառակ է ժողովրդեան շահուն, հակառակ է մեր սկզբանց մի կեղեքիչ կառավարութենէն ազատելու համար՝ մի այլ, հարազատ, կեղեքիչ կառավարութեան ոտքին տակ իյնալ։ Մենք, Հնչակեանքս, ամեն ճիգ պիտի թափենք ձեռք բերել հայ ժողովրդին համար, որ մեզ հետ կը քալէ այսօր, այնպիսի հասարակային դրութիւն մը, որ կեղեքուածը, գիւղացին, աշխատաւորը կեղեքողներուն, նորա քրտինքով ապրողներուն դէմ ինքնապաշտպանութեան զէնքեր ունենայ օրէնքներու մէջ և ձգտի իր առաւել ընդարձակ բարօրութեան իրագործման աւելի հեռաւոր ապագային մէջ։ Կրնա՞նք այդ վիճակի իրագործման չը ձգտիլ՝ առանց դաւաճան ըլլալու ժողովրդեան կենսական պահանջներուն, առանց

մատնելու անիկա սպառման, կորստեան. ո՛չ. — ատոր համար է որ մենք յեղափոխական ենք։ Կրնա՞յ և կուզէ՞ այն վիճակն իրագործել Թիւրք տէրութիւնը. ո՛չ. — ատոր համար է որ մենք ապստամբ ենք։ Եւ ինչ անմիտ պիտի կարծուիմք մենք, եթէ ո՛չ այդ հոյակապ շէնքին, այլ մի հարազատ լուծ ունենալու համար՝ թողլով մեր ընտանիքն ու հանգստութիւն, զոհելով մեր կայքն ու կեանք՝ ելլենք գանք Անատոլիի ներսերը, պահուելու համար փնտռենք այրեր ու խոռոչներ, օրերով մնանք անօթի ու ծարաւ, գիշերի խոր լռութեան մէջ, ամայի լեռներու վրայ վայող բուերու ձայնին տակ, մեր մերկ ու սակաւապետ մարմինները պատսպարելու համար կարօտ մնանք կապերտի ու ապայի կտորներու, հագնինք տրեխներ (չարու) ու պարտաւորինք երբեմն մեր քաղցը յագեցունելու համար կրծել վայրի խոտերու արմատներ ու վայրի պտուղներ...

Ես և ներկայացուցած Հնչ. Կուսակցութեանս պատկանող ընկերներս կուզանք այդ սկզբունքներու և գաղափարներու ծառայելու ու զանոնք ժողովրդեան մէջ ծաւալելու, ձգտելով հասարակութեան բարօրութեան նպաստելու, ժողովուրդն իր ամէն իրաւանց տէր ընելու և իր տխուր կեանքն ըստ ամենայնի քաղցրացնելու համար։ Այս է իմ շարժառիթս, այս է մեր ամենուն շարժառիթն ու սկզբունք, այս է հասարակութեան անմիջական պէտքը, արդար պահանջը. և ահա այս ցանկալի ընդհանուր շահուն, ընդհանուր բարօրութեան մէջ է հայ ազգին ու հայ անհատին, ինչպէս նաեւ մեզ հայրենակից ամէն ազգի և ամէն անհատի, մասնաւոր շահն ու բարօրութիւն։

Թոյլ տուէք ինձ այլ կերպ կանգ առնեմ խնդրին վրայ։

Հայ ազգը նշանաւոր Ֆաթիհ սուլթան Մէհէմմէտ Բ. խանի իշխանավարութենէն, այն է իբեւ 500 տարիներէ ի վեր, Օսմանեան գահուն հովանւոյն ներքեւ ապրած է ու կապրի։ Այս ազգ սոյն երկար ժամանակամիջոցի մէջ հաւատարմութեան շաւղէն չէ շեղած և ոչ մազի չափ. եղած է աշխատասէր, մտացի, ճարպիկ, հնարագէտ մի ժողովուրդ։ Զայս կը վկայեն պատմութիւնք, ինչպէս նաև Օսմանեան տարեգրութիւնք։ Ճարտարապետութիւն, փողերանոցի, վառօդարանի, հանրային տրոց, մաքսի տեսչութիւններ և այլ փափուկ պաշտօններու վերին հսկողութիւն հայ ազգի անհատներու ձեռամբ շարունակ գործ դրուած են. միով բանիւ հայեր, իրենց հաւատարմութեամբ, յառաջդիմասէր ձրգտումներով ու գործունէութեամբ՝ ոչ նուազ բարոյական ու նիւթական ծառայութիւններ մատուցած են երկրին ու կը մատուցանեն տակաւին։

Հայեր, ի հարկէ, այդ հին ժամանակներու մէջ ալ ունէին տուրքեր՝ տէրութեան գանձը հոգալու, այդ ժամանակներու մէջ ալ կը կրէին հալածանք ու զրկանք ենիչերիներէ, քիւրտերէ և այլ ցեղերէ. այդ ժամանակներու մէջ ալ Օսմանեան տէրութեան և օտար կառավարութեանց միջեւ կը ծագէին քաղաքական ծանր խնդիրներ, երբեմն իսկ պատերազմներ. հայեր այդ հոգաշատ ժամանակներու մէջ ալ կրնային բողոք բարձրացունել օտար տէրութեանց և կամ փայլուն պատրանքներով՝ հակումներ ցուցնել դէպի այս կամ այն կառավարութիւն ու այսպիսով նետել իրենց վրայէն Օսմանեան լուծը։ Ուրեմն երբ հայը, որ դարերէ ի վեր այդ չէ արած և մնացեր է միշտ հաւատարիմ, ինչո՞ւ այս վերջին տարիներու մէջ կը տեղացունէ զանազան բո-

ղոքներ, կը բարձրացունէ աղմուկներ, կշարժի, կը խլըրտի ու կը փաթթուի իր հանդիպած միջոցին։ Անտարակոյս պատճառ ունենալու է և պէտք է մի գաղտնիք կենայ այս) բոլոր խլրտմանց ու դժգոհութեան ճիչերու ներքեւ։ Այո՛, կայ մի գաղտնիք և զայն պարզել դիւրին, խիստ դիւրին է։

Հայեր ցնորական գաղափար մը չէ որ կը տածեն. Նոքա կուզեն, բնականաբար, հետեւիլ լուսաւորեալ ու զարգացեալ քաղաքակրթութեան մը շաւիղներուն, և այսօր մի կարգ նպաստաւոր, մղիչ, մի ուրիշ կարգ աննպաստ, կաշկանդիչ պարագաներու շնորհիւ՝ կուզեն առաւել քան երբէք յառաջադիմել գիտութեան ու արուեստից մէջ, կուզեն երջանկութեամբ վայելել իրենց արդար վաստակները, կուզեն միով բանիւ ապրիլ իբր մ ա ր դ, ապահովեալ կեանքով ու կեանքի բոլոր նպաստաւոր պայմաններով, համընթաց հասարակային արդար պահանջից ու ձգտմանց։

Եւ երբ այս բնական արթնութեան մէջ կը տեսնեն իրենց անհատական, ընտանեկան ու ժողովրդային սուրբ իրաւանց բռնաբարութիւնը, այն է՝ կենաց, պատւոյ, ընչից բացարձակ անապահովութիւնը եւ մի շարք ազգային իրաւանց կաշկանդումը, զորս Պերլինի 61-րդ Յօդուածը հաստատելով՝ յուսոյ խաբուսիկ մի նշոյլով կը խոստանար դարմանել, և երբ փոխանակ դարմանուելու, ընդհակառակը, սոսկալի համեմատութեամբ կաճին ու կը բազմապատկին երկրին մէջ տիրող հալածանաց, անիրաւութեանց, զրկանաց, բարբարոսութեանց որակն ու քանակը. երբ, կը կրկնեմ, կը տեսնեն հայեր որ իրենց կործանումը փութացնելու ու ժողովրդեան գոյութեան վճռական հարուածներ տալու մասնաւոր միտում-

*ներ, մասնաւոր եռանդուն ջանքեր կան, — այս դառն իրականութեան հանդէպ՝ բնական չէ՞ որ կատաղին, դիւահարին և յուսահատական ճիգերով մաքառին իրենց գոյութեան պայմանաժամը երկարելու. ըսէք, խնդրեմ, բնական չէ՞, արդարացի չէ՞ այս մաքառում։*

*Այո, ամէն տէրութեան երկրի մէջ հալածանք կը պատահին, բայց նոցա մէջ բռնաւորներն ու աւազակապետներն պաշտպանելու, արդարացնելու, շքանշաններով պատուելու միտումն ու ջանքը միշտ չերեւիր։ Մենք արդարութիւն կուզենք։*

*Այո, ամէն կառավարութեան ատեաններու ու դատարաններու մէջ ամբաստանեալին, յանցաւորին նկատմամբ օրինաց համաձայն քննութիւններ կը կատարուին, բայց, մեր մէջ տեսնուած ու մեզմէ խիստ շատերուն վրայ կատարուածին պէս, ամբաստանեալները խ ո ս տ ո վ ա ն ց ո ւ ն ե լ ո ւ և մինչեւ իսկ չը գիտցածնին խ օ ս ե ց ո ւ ն ե լ ո ւ համար՝ այս ժողովոյն առջեւ խօսելն ու լսելը անվայել, անպարկեշտ տանջանքներ ի գործ չեն դրուիր։ Մեր մարմիններն անձեռնմխելի՛ պիտի ըլլան միշտ։*

*Այո, ամէն կառավարութեան մէջ, օրինաց ներած աստիճանով, տուներ կը կոխուին, կը խուզարկուին, բայց մեր աչաց առջեւ պատահածին պէս պաշըպօզուքներ զապթիյէներու հետ միացած՝ տանց դռները չեն խորտակեր ու մտներ, կանանց նուիրական պատիւը չեն բռնաբարեր, տան թանկագին իրեղէնները չեն թալաներ և տունը աւերակի ու մոխրի կոյտերու չեն վերածեր։ Մեր պատիւը, մեր բնակարանն, մեր հացն անձռնմխելի պիտի ըլլան միշտ։*

*Այսօր Օսմ. տէրութեան մէջ “Հայ և Հայաստան„ խօս-*

քերը ոչ միայն արտասասանողներն, այլ մինչև իսկ լսողները՝ խիստ հարցաքննութեան, բանտարկութեան, ծեծի ու բազմատեսակ չարչարանաց կենթարկուեն։ Մենք խօսքի, ընկերութեանց և գումարումներու ազատութիւն կուզենք։

Այսօր Օսմ. տէրութեան մէջ կարգիլուի ճշմարտութիւնը գրել, սկզբունքներ պարզել, կենսական խնդրոյ վրայ ճառել եւն. ստութեան ու կեղծիքի անարգ գործիք մըն է մամուլը այժմ։ Մամուլի ազատութիւն կուզենք։

Եկեղեցական, վանական, դպրոցական, կտակային, ընկերական, ամուսնական և այլ կարեւոր խնդիրներ ընդհանուր ժողովրդեան կամքով պիտի սահմանուին։ Հասարակային յարաբերութեանց, կրթութեան և խղճի ազատութին կուզենք։

Այսօր Օսմ. տէրութեան պաշտօնէից մէջ համաճարակ դարձած կաշառակերութեան և զեղծումներու շնորհիւ խեղճ ժողովրդեան կրած տառապանքին և զրկանքին, դատերու տարիներով երկարաձգումին եւ կարգ մը խեղճ պարարծներու, իսլամ և ոչ-իսլամ, տարիներով առանց դատաստանի կամ անարդար դատավճռով բանտերու մութ և խոնաւուտ անկեանց մէջ հիւծելուն դէմ ոչ թէ բողոքել, այլ ինքն իրեն նստել ու իր աղէտին վրայ ողբալն անգամ կարգիլուի։ Իր պարտքը ճանաչող, օրինական և հասարակութեան վրայ ոչ ծանրացած պաշտօնէական վարչութիւն կուզենք. կանոնաւոր, ազատամիտ և արդար դատարանական գործողութիւն կուզենք։

Այսօր Օսմ. կառավարութեան ամէն կարգի ճընշումներն ու բռնաբարութիւնները մի կողմէն և բարբարոս ցեղերու հասուցած աղէտը, հալածանքն ու կառավարութեան ատոնց ըրած ամէն տեսակ պաշտպանութիւններն արեան մէջ կը խեղդեն հայ ժողովուրդը։

ինքնապաշտպանութեան համար մենք զէնք կուզենք. փոխանակ ժողովրդեան վրայ ծանրաբեռնեալ զօրաց առանձին դասի մը՝ ընդհանուր ժողովրդեան զինուորութիւն կուզենք։

Այսօր Օսմանեան տէրութեան մէջ ժողովուրդը տնտեսապէս կը քայքայուի, կը մահանայ շնորհիւ ամէն կարգի հարկերու ու տուրքերու ծանրութեան ու եղանակներու և պաշտօնեաներու գործած ամէն տեսակ ապօրինութիւններու, շնորհիւ տնտեսական նախաձեռնութեան կաշկանդման, շնորհիւ յարմար հաղորդակցութեանց, ճանբաներու, կատարեալ բացակայութեան, շնորհիւ կառավարութեան պաշտպանած վաշխառուներու, մեծ կալուածատէրերու, պարտատէրերու և ամէն կարգի կեղեքիչներու,— մինչդեռ տնտեսական յառաջդիմութեան նոր և ընդարձակ պահանջներ են երևան եկած հասարակութեան մէջ։ Տնտեսական ազատութեան և աշխատաւոր դասակարգի շահերու համար կառավարական օգնութիւն ու նպաստաւոր օրէնքներ կուզենք։

Եւ այդ բոլոր պահանջներու գործադրութիւնքը պիտի կատարուին ընդհանուր ժողովրդեան կամքով, անոր նախաձեռնութեամբ և անոր շահերու համաձայն։ Ժողովըրդեան ամէն չափահասներու ուղղակի ընտրական իրաւունքը կը պահանջենք, որ իրեն քուէներով պիտի ընտրեն և գումարեն Ազգային Ժողով մը։

Ահա, տէր նախագահ, մեր, հայ ժողովրդեան ներկայ ա ն մ ի ջ ա կ ա ն պահանջները, որոց իրագործման նա պիտի դիմէ, ստիպեալ է դիմելու և արեան ծովու միջով իսկ, քանի որ այլ կերպ չը կրնար հասնել իր այդ անմիջական, այդ մօտաւոր նպատակին։ Որովհետև այլ ևս նա յոգնեցաւ, ձանձրացաւ տոկութենէն, նոր կեանքի անհանդուրժելի պէտք մը զգալով։ Եւ եթէ այսօր,

վաղը նա արեան հեղեղներ թափելով հարթէ իր ճանբան դէպի իր ազատութիւնը, ատոր պատասխանատու պատմութեան առջեւ ինքը չը պիտի լինի։ Ամէն համբերութիւն իր սահմանն ունի... Կանաչ ճիւղերը կարելի է մինչեւ մէկ աստիճան ծռել, բայց երբ այդ աստիճանը կանցնի՝ կը կոտրին։ Մարդիկ երբեմն մեծ չարիքներու, նօթութեան, ծարաւի, ցուրտի եւ այլն կրնան դիմանալ, բայց երբ չափն անցնի՝ այլ եւս չը կարենալով դիմանալ՝ կամ ինքզինքնին կը կորսնցունեն և կամ կը ձեռնարկեն աւարի, կոտորածի, յափշտակութեան։ Օդը կարելի է շիշի մէջ ճնշել մինչեւ այսինչ աստիճան, եւ այդ աստիճանը որոշ է, բայց երբ այդ աստիճանը կանցնի՝ շիշը կը պայթի և գուցէ վնաս պատճառէ զինք ճնշողին ու մօտակայից։ Արդ, որո՞ւ է յանցանքը, ճիւղին որ կոտրեցաւ և կամ կոտրիլ ստիպուեցաւ, թէ ոչ ձեռքին, որ զայն չափազանց ծռեց. աւարի և յափշտակութեան յանդգնող նօթի ամբոխի՞ն, թէ ոչ՝ նօթութիւն ծնուցանող և խեղճութիւն մշակող օրինաց. շիշը պայթեցունող օդի՞ն, թէ ոչ՝ օդը չափազանց ճնշողին։

Տէր Նախագահ, նշանաւոր է առածն իր ճշմարտութեամբ.

„Աճ պրագմայըն, խըըսըզ օլուր,
Չօգ սէօյլէմէյին, տըսըզ օլուր։"
— Նօթի թողուք՝ կըլլայ աւազակ,
Թէ շատ զրուցէք՝ կըլլայ անառակ։

Թէ որ ես եւ իմ ընկերք ոճրագործներ ենք, ինչպէս կըսուի, թէ որ մենք ընկերութիւն կազմեր ու կազմակերպութիւններ ըրեր ենք եւ թէ որ այսօր կայ կառավարութիւնը զբաղեցնող ներկայ խնդիրը, ատոր պատ-

ճա՛ռը և այս կացութեան պատճառ եղողները պէտք է փնտռուին,— ահա անո՛նք են մեղապարտ, անո՛նք են պատասխանատու և ո՛չ մենք:

Տէր Նախագահ, կառավարութիւնը զիս և ինձ նըման 40-50 հոգիներ ձերբակալելով անոնց մասին ծանր պատիժներ տնօրինելէ ի՛նչ օգուտ կրնայ քաղել. միթէ խնդիրը ասով վերջացած կըլլայ. կարելի՞ է միթէ երկիր մը կամ գաւառ մը համաճարակէն ազատել՝ նոյն համաճարակով վարակեալները մեռցնելով. ո՞չ ապաքէն ախտը հիմնովին ջնջելու համար պէտք է ջնջել ախտին պատճառը: Կառավարութիւնը զմեզ ոճրագործ և երկրին ու տէրութեան դէմ դաւաճան կը նկատէ, բայց միթէ այս նկատում համաձա՞յն է արդարութեան և խղճի օրինաց: Մեր վէրքերը երեւան ենք հաներ, դարման կը փնտռենք, ահա մեր յանցանքը, ահա մեր ոճիրը: Յանցաւորն այն է որ իր ցաւն ու ախտը կը ծածկէ բժիշկէն:

Քայլ մը յառաջ երթալով կը յայտարարեմ ամենայն համարձակութեամբ թէ՝ մի ժողովուրդի և կամ մի ազգի նեղութիւնն ու տառապանքը ժամանակին առ որ անկէ չը ծանուցանող և միշտ իրենց անձնական շահերն ու հանգիստն հասարակութեան վնասու մէջ փընտռող, և ամենէն աննպաստ պարագայից ներքեւ իսկ թէ ինքզինքնին և թէ բարձրագոյն կառավարութիւնը՝ «ասամըշ պէր քէմալ տըր» (կատարեալ անդորրութիւն կը տիրէ) պարբերական հեռագիրներով խաբողներ են կեղծաւոր պաշտօնեաններ, երկրին թշնամիներ. այո՛, անո՛նք են հայրենեաց ու ժողովուրդի դաւաճաններ և ո՛չ մենք:

Բարձրագոյն ատեանդ թող շնորհ ընէ մի անգամ խղճի մտօք ակնարկ մը ձգել մեր անցեալ կենաց վրայ: Ես եւ իմ նմաններ, ո՛չ աւազակ ո՛չ դաւաճան, ո՛չ մար-

դասպան ու ոճրագործ ենք. այլ այս Հայրենեաց և մեր Հպատակած կառավարութեան՝ 500 տարիներէ ի վեր ամենայն հաւատարմութեամբ ու անձնուիրութեամբ ծառայող Հայրերու հարազատ զաւակներն ենք, ի հարկին պատրաստ մեր կեանքը տալու Հայրենեաց բարեկարգութեան և հասարակաց բարօրութեան համար։

Տէր Նախագահ, թոյլ տուէք ինձ մի քանի խօսք ալ ասել ծանօթ եափթաներու (յայտարարութիւն) մասին։ Արդարեւ, ինչպէս ձեզ յայտնի եղաւ, այս յայտարարութիւնք Հնչակեան կուսակցութեանս կեդրոնէն տրըուած հրահանգին համեմատ այս կողմեր՝ Նորա բազմաթիւ Մանաճիւղերի միջոցով ցրուեցան կամ փակցուեցան, բայց այլ եւս հարկ է ըսել որ ասոր մէջ ալ մի գաղտնիք կայ. և ահա գաղտնիքը, որ է զուտ ճշմարտութիւն։ Թէեւ ատոնք այս կողմեր հայերու ձեռամբ ցրուեցան՝ բայց ատոնց խմբագիրն ու հեղինակներ հայեր չեն, ինչպէս շատեր կարծեցին ու դեռ կը կարծեն. անակնկալ մի աղբիւրէ եկան անոնք։ Ահաւասիկ ապացոյցներս։ Թէ այդ յայտարարութիւնք և թէ ատոնց ցըրուելէն ամիսներ առաջ ատոնց օրինակները թարգմանօրէն հրատարակող՝ մեր Հնչակեան կուսակցութեան գըլխաւոր օրգան՝ "Հնչակի" նոյն թիւն՝ այժմ դատարանիդ սեղանի վրայ է. շնորհ ըրէք, բացէք, կարդացէք նոյն թիւը, ուր պիտի տեսնէք թէ՝ այս յայտարարութեանց մի շատ օրինակներ կանխապէս ցրուած են Միջերկրականի եզերաց վրայ մինչեւ Սիւրիա. բայց զարմանալին այն է որ կառավարութիւնը յայնժամ ոչ մի շշուկ չը հանեց. արդեօք ինչո՞ւ..... Այո՛, յառաջագոյն կազմակերպեալ և այսօր Լօնդօնի մէջ գոյութիւն ունեցող իսլամ գօմիթէն՝ որովհետեւ Միջերկրականի եզերաց մէջ կըր-

նար դիւրաւ յարաբերութիւններ ու ճիւղեր հաստատել այդ կողմեր, իր խլամ ճիւղերու միջոցաւ յաջողեցաւ ցրուել զանոնք. և թէպէտեւ կառավարութիւնը մի քանի տեղեր իրազեկ եղաւ խնդրոյն գաղտնեաց, բայց խոհեմութիւն սեպեց գործը շուտով ծածկել, հարկաւ մեր խլամ հայրենակցաց մէջ յուզման և գայթակղութեան առիթ չընծայելու համար։ Բայց, որովհետեւ վերոյիշեալ խլամ գոմիթէն ներքին գաւառներու մէջ դեռ յարաբերութեան և հաղորդակցութեան դիւրութիւններ չունէր՝ մեր կեդրոնական գոմիթէին դիմելով անոր օգնութիւնը խնդրեց. Կեդրոնն իր համաձայնութիւնն տուաւ։ Բաց աստի, յայտարարութեանց պարունակած իմաստն ու ոգին մեր ընկերութեան նպատակէն ու սկզբունքէն բոլորովին դուրս են։ Եթէ շնորհ ընէք և տաք ինձ «Հընչակի» նոյն թիւը, պիտի ապացուցանեմ հրապարակաւ թէ՝ խլամներէ կազմուած մի գոմիթէ՝ մի ժամանակ Ֆրանսիայի մէջ գործեց և La Turquie Libre (Ազատ Թիւրքիա) անուամբ մի թերթ հրատարակեց, ապա ֆրանսական կառավարութիւնը, համակերպելով Թուրք կառավարութեան խնդրանաց, զանոնք իր երկրէն արտաքսեց, ուսկից անցնելով գոմիթէն յԱնգղիա, հաստատուեցաւ ի Լօնդօն, ուր է և կը գործէ ցայսօր։ Կառավարութիւնը սոյն գոմիթէի և թերթի գոյութիւնը շատ լաւ գիտէ, և ես այս կէտը ձերբակալուած օրէս ի վեր կըրկին կրկին շեշտած ու համարձակ իրողութիւնը յայտարարած եմ կուսակալ Ապէտտին բաշայի, Կեսարիոյ միւթէսարըֆին և այլ բարձրաստիճան պաշտօնէից առաջ։ Բայց դոքա սոյն յայտարարած իրողութեանս վրայ, գէթ առերեւոյթս, թեթեւ աչօք նայեցան և կամ գրեթէ կարեւորութիւն չընծայեցին, եւ ես այս պարագան ուրիշ

պատճառի չեմ կրնար վերագրել, եթէ ոչ այս խորհրդին, թէ Եւրոպայի մէջ իսլամներէ բաղկացեալ Գոմիթէի մը գոյութիւնը՝ հոս իսլամ ժողովրդեան մէջ չը տարածայնելու ու կարգ մը շփոթութեանց տեղի չը տալու համար՝ ծանօթ յայտարարութեանց հեղինակ ու խմբագիր՝ հայերը հռչակելով՝ մեր իսլամ հայրենակցաց ատելութիւնը մեր վրայ գրգռեն։ Բայց միթէ արդարութիւնը կը ներէ՞ մի այսպիսի խեղաթիւրում։

Տէր Նախագահ, Ներկայ խնդրոյս նպատակն ու իրողութիւնը ընդարձակօրէն պարզեցի. կը յուսամ թէ կառավարութեան և հասարակութեան շփոթ և մութ գաղափարները լուսաւորելու բաւական բացատրութիւններ տուի. այս ամէնը արդարութեամբ և խղճմտօրէն քննելէ վերջ իմ մասին վճիռ մը արձակել ձեզ կը մընայ. ինչ որ ալ լինի ձեր վճիռն ու որոշումն, այժմէն կը յայտարարեմ որ խիղճս անդորր է, զի սուրբ նպատակի մը համար, ըստ կարի, պարտքս կատարած եմ։ Կը խնդրեմ միայն ամենէն գեր ի վեր ու նախիրական հայրենեաց ու հասարակութեան շահն ու իրաւունքը ի նկատի ունեցէք միշտ եւ ապա կ՚ուզէք մահապարտ հռչակեցէք զիս։

Իրեր ու մարդիկներ ժամանակի հոսանքին հետ կը սահին, կանցնին, բայց ապագային համար պատմութիւնը միայն կը մնայ, հաւատարիմ աւանդապահ անցեալ ժամանակաց. եւ արդ, ապագան ու արդարութիւնը, անհամբեր լարուած աչքերով ձեզ կը դիտեն, ձեզ կը խօսին. եթէ կրնաք անսացէք դոցա ձայնին, ձեռքերնիդ դրէք ձեր խղճին վրայ ու այնպէս արձակեցէք ձեր վճիռը։

29 Մայիս, 1893

Գաղատիա Դատարան.

II

## ՊԱՇՏՊԱՆՈՂԱԿԱՆ ՃԱՌ ԿԱՐՕ ՔԷՐՏՄԷՆՏԵԱՆԻ

— *Թալասցի (կեսարիա)* —

---

*Տէր Նախագահ,*

*Ժամանակէ մը ի վեր մի դատ կը մղուի մեզի դէմ. Նախնական քննութեանց իբր արդիւնք՝ ձերբակալուեցան ոչ սակաւ անձինք։ Կառավարական պաշտօնեայք գործին խռովարար (ֆէսատ) մակդիրը կու տան, խնդրոյն գոյնը կը փոխեն. և ի՞նչու։— Պատճառը մէկ է և պարզ. զի ներկայ խնդիրս իր պարզութեան մէջ՝ իրենց մերկութիւնը և քաղաքականութեան գոյնը հրապարակելու կը ծառայէ. և ուստի կը պարտաւորին աքօղել զայն, խեղաթիւրել զայն ըստ հաճոյս իւրեանց, և այսպէս զմեզ ներկայացունել իբր ամենամեծ ոճրագործներ. բայց ճշմարտութիւնը՝ եթէ մի ժամանակ իր երեսը պահէ իսկ, չը մարիր, չը մեռնիր. Նոյնպէս արդարութիւնը վերջապէս մի օր, ուշ կամ կանուխ, իր փայլուն գլուխը պիտի բարձրացունէ ապագայ հորիզոնէն և յայնժամ զմեզ և կամ մեր հողակոյտերը մատնանիշ ընելով պիտի հռչակէ թէ մենք ո՛չ խռովարար, ո՛չ ոճրագործ և ոչ հայրենեաց թշնամիներ ենք, այլ անձնուէր, հաւատարիմ, հասարակաց հայրենիքին հարազատ բարեկամ և նորա բարօրութեան համար կայք ու կեանք զոհելու պատրաստ ոգիներ եղած ենք։ Այս հաստատ համոզու-*

մով սկսած գործի և բանտի տամուկ անկեանց մէջ ու շղթայի տակ. ա՛յս է գերագոյն սփոփանքս։

Տէր Նախագահ, դարերու և ժամանակներու ըն-թացքով բնական է որ ուսում և գիտութիւն օր քան զօր ծաղկին ու ծաւալին ժողովրդեան ամեն խաւերու մէջ. այս յառաջընթաց հոսանքի մէջ ամեն ինչ կը թո-ղու իր հին գրութիւնը, կը նկրտի ի նորն, ի լաւն, ի լա-ւագոյնն, միով բանիւ՝ ի կատարեալն՝ ըստ այսմ, մարդ-կութիւն, մի ժողովուրդ, քաղաքակրթութեան լուսով քանի լուսաւորուի այնքան լաւ կը տեսնէ իր մերկու-թիւնը, իր պահանջները,որոց թիւն ու սահման կաճի եւ կընդարձակի ըստ աստիճանի լուսոյ եւ գաղափա-րի զարգացման։ Ահա այս անհրաժեշտ եւ ազնուական պէտքերու առջեւ՝ բնական մի ձգտում կամայ ակամայ կը մղէ մարդը կամ ժողովուրդը դէպ ա՛յն կողմ՝ ուս-կից կը յուսայ լնուլ իւր բազմապիսի պէտքերը, որոնք, իրենց կարգին աստիճաններ պիտի ըլլան նոր պէտքե-րու, նոր զարգացման։

Պատմութիւնը կը ցուցնէ թէ հայ ժողովուրդը օս-մանեան տէրութեան հպատակած օրէն ի վեր՝ այս կամ այն ձեւի տակ՝ հալածանք, զրկանք եղած է իր բաժի-նը։ Եւ ինչո՞ւ, պիտի առարկուի բնականօրէն, հին ատեն-ները, ըսենք երկու դար առաջ մի դար առաջ, դժգո-հութեան արտայայտումներ, խլրտումներ չունեցան հայեր։ —Պատճառը պարզ է, եւ արդէն՝ ի վերեւ բացատր-ուած։ Այդ ժամանակներ հայեր, ինչպէս նաեւ իրենց հայրենակից ժողովուրդներ, զարգացեալ քաղաքակրթու-թեան մը լեցուն ճաշակը չէին առած, համեմատաբար մութի մէջ էին, իրենց կեանքին մէջ տնտեսական, հա-սարակական ներքին նոր պէտքեր և պահանջներ ծագած

չէին տակաւին և իրենց գլխին տեղացած չարիքներուն իսկ փառք տալով՝ կուրօրէն կը համակերպէին պատահածին: Ուստի, այս աւուր հայուն դժգոհութեան արտայայտութիւնները ուրիշ ոչինչի պէտք չէ վերագրել եթէ ոչ՝ յառաջդիմութեան բուռն տենչին, զարգացման նոր արթնցած և կամ արծարծուած կրակոտ փափաքին կեանքի նոր պէտքերու պահանջին, չը մոռնամ նաեւ օրուան խնդիրը, հացի խնդիրը, որ մի հսկայական դեր կատարելու սահմանուած կը թուի: Ներկայ խնդրոյս այս տեսակէտէն նայելով՝ ո՞վ կարող է մեղադրել զմեզ. ո՞չ ապաքէն բնական է մի այսպիսի ձգտում և համընթաց՝ դարուս ոգւոյն, եւ ո՞չ ապաքէն զուր է մաքառիլ այս ձգտման դէմ, պատուար կանգնել այս նոր հոսանքին դէմ:

Թէ մի գործօն ընկերութիւն, Հնչակեան անուամբ, գոյութիւն ունի այս երկրին մէջ՝ անուրանալի է այդ. բայց խիստ անարդար է „խռովարար“ մակդիրը տալ այդ կազմակերպութեան: Եթէ ինձ հարցուի՝ փ ր կ ա ր ա ր մակդիրը կընծայեմ անոր: Եւ արդարեւ այդ ընկերութիւնն ո՛չ միայն հայերը այլ և բոլոր վիճակակից հասարակութիւնը բռնութեան եւ հարստահարութեան ճիրաններէ փրկելու մեծ նպատակն ունի: Զատուիլ Թիւրքիայէն և մենք մեր գլխին մի թագաւոր մի իշխան ունենալը զուտ կրպարտութիւններ են մեզի և մեր կուսակցութեան սկզբանց դէմ. և եթէ մի այդպիսի դրութիւն այսօր իրականանար, կը հաւատամ որ մեր արդի վիճակէն աւելի նախանձելի մի վիճակ չը պիտի լինէր այն: Մենք կը ցանկանանք, այո, հայ, թուրք, յոյն, հրէայ եւն՝ բոլորս միասին, եղբայրաբար, մէկ հողի վըրայ, մէկ դրօշի ներքեւ վայելել ազատութեան, արդարութեան, հաւասարութեան քաղցր պտուղները, ապրիլ

ապահով և մարդավայել մի կեանքով և անմասն չի մնալ ցանկալի քաղաքակրթութեան բարիքներէն։ Ա՛յս է մեր փնտռածը և հասարակութեան ցանկացածը. հո՛ս է երջանկութիւնը և ոչ աշխարհացոյցի գոյները լաւ փոխելու մէջ. այդ սնոտի խաղը ուրիշներուն կը թողունք։

Հարցնենք մի անգամ այն ժողովրդոց, մեծ կամ փոքր, որոնք ունին տէրութիւններ, թագաւորներ, կայսրներ եւ այլն, հարցնենք թէ այդ անուամբ իրենց վրայ ծանրացող այն ոսկեզօծ լուծերէն գո՞հ են։ Ես իմ մասին անշուշտ եմ, "ո՛չ, ո՛չ" պիտի պատասխանեն ամենքը, եւ ոմանք այս բացասականին՝ աղիողորմ հառաչներ պիտի կցեն։ Ոչ, տէր նախագահ, մենք չենք ցանկար նոր ոսկեզօծ լուծեր յօրինել մեր վզին, մեր, ինչպէս նաեւ աշխարհի բոլոր ժողովրդոց բողոքը, ամեն տեսակ լուծի դէմ է արդէն։

Եւ արդ ի՞նչպէս չը հառաչենք եւ նորանոր միջոցներու չը դիմենք, մինչ մեր ականջին տակն ու աչքի առջեւ ամեն օր, ամեն ժամ խեղճ մի բազմութիւն կը տառապի, կը տագնապի վայրենաբարոյ, անուղղայ ցեղերու հարստահարութեանց ներքեւ. մինչ խեղճ, հեզահամբոյր հայ ժողովրդեան հալալ վաստակն, կայքն ու կեանք և նուիրական պատիւ ի վտանգի են շարունակ. մինչ երկրին մէջ, ամեն կողմ, կը տիրէ բացարձակ անապահովութիւն, որի բնական արդիւնքը կը լինի սնանկութիւն. աղ քատութիւն վիճակագրութիւնք աւելի պերճախօս են. շնորհ ըրէք քննեցէք ու պիտի տեսնէք թէ՝ սա վերջին 3—4—5 տարիներու մէջ որչափ յաճախ և որչափ մեծ սնանկութիւններ տեղի ունեցած են։ Այս մէկ կողմէն։ Ինչպէ՞ս չը հառաչենք և ազատութեան միջոցներու չը դիմենք, երբ միւս կողմէն ինքն կառավարութիւնը

նորանոր վէրքեր կստեղծէ, տնտեսական եւ քաղաքական
զարգացման առջեւ ամէն կարգի արգելքներ կը ստեղ-
ծէ. ամէն տարի կը կրկնապատկէ, կը բազմապատկի ար-
դէն կեցած ծանր տրոց քանակը։ Իսկ հաւաքման եղա-
նակը. սիրտ չէ մնացած որ չը վիրաւորի այս սոսկալի
հարուածէն. տուն չէ մնացած որ չայրի դժոխքի այս
անգութ կրակէն, գիւղ չէ մնացած որ չը քայքայի այս
հսկայ աղէտէն։ Երկրագործ խեղճ ժողովրդեան, հարկա-
ւաքներու և ոստիկաններու, որպէս թէ մահուան սեւ
հրեշտակներու առջեւ մահուան դողով կը բռնուի։ Եր-
կիրը արդէն յոգնած ու անիծուած, կը զլանայ առատ
բերք, ուստի ի՞նչպէս փակել հին հաշիւները, ինչպէս
կերակրել ընտանիքի անդամները։ Հարկահաւաքներ պէտք
է ստանան իրենց պահանջը, ինչ կերպով որ կրնան. և.
ուստի աղքատ ժողովրդեան կեանքի ամէն կարեւոր պի-
տոյքները կը վաճառեն և այն չափազանց վատ գնով. կը
վաճառեն խեղճերուն ոչխարն ու կովը, էշն ու եզը, տան
կահ կարասին, մինչեւ իսկ անկողինն ու վերմակ, մինչեւ
որ մերկացունեն տունը, կողոպտեն ընտանիքը ու կործա-
նեն գիւղը։ Առ այս ապացոյցներ յառաջ բերելու հա-
մար չափազանց պարզամիտ պէտք է լինի մէկը. սոքա հա-
նրապազօրեայ մերկ իրողութիւններ են ուստի անհերքելի։

Եւ ուստի, ինչպէ՞ս չը խորհինք միջոցներ այս չա-
րիքներէն ազատելու համար և ինչպէ՞ս չը կազմենք գաղտ-
նի ընկերութիւններ, քանի որ մեր բողոքները լսելու
եւ արդարութիւն ի գործ դնելու տրամադիր մի մար-
մին չը կայ. եւ ի՞նչ օգուտ բողոքներ պաշտօնէի մը
դէմ իրմէ բարձր, բայց իրեն համախոհ պաշտօնէի մը-
ա՛խ, գէթ ազատութի՜ւն կենար համարձակ լալու և մեր
կոծն ու բողոք մամուլի յանձնելու։ Տարաբա՛ղդ ժո-

ղովուրդ, ձեռքը կապուած, ոտքը կապուած լեզուն կապուած, մինչեւ ե՞րբ այսպէս սպասել։

Ինչպէս չը հառաչենք եւ ամէն կարելի միջոցներու չը ձեռնարկենք երբ կը տեսնենք որ կաշառակերութիւն բացարձակ տիրող օրէնքի կարգ է անցած, երբ ժայանի իրաւունքներ կը խեղաթիւրուին, երբ ճշմարտութիւնը մուրով կը ծեփուի, երբ արդարութիւնը կարտաքսուի դատարաններէն, երբ գողեր, աւազակներ, ոճրագործներ անպատկառ կը պաշտպանուին եւ երբ ասպարէզ կը բացուի եւ կընդարձակուի աղքատացած ժողովուրդը չարաչար կեղեքելու, պաշտօնապէս եւ անպաշտօն կերպով. ըսէք, խնդրեմ, միթէ կարելի՞ է տոկալ այս չարիքին։

Տէր նախագահ, կը ցանկամ թէեւ խնդիրը մի քիչ աւելի պարզել, բայց ժողովոյդ ձանձրոյթ չը պատճառելու համար չը պիտի խօսիմ վերջին պատերազմի միջոցին Րումելիի եւ Անատոլիի կողմերը ճնշուած ժողովրդեան ենթարկուած սրտաճմլիկ դժբաղդութեանց մասին, չը պիտի խօսիմ Շէյխ Ճելալէտտինի, Շէյխ Օպէյտուլլահի եւ այլ բազմաթիւ պէկերու, փոյփօտաններու, աղաներու չահատակութեանց մասին, որոնք Պերլինի դաշնագրոյն 61-րդ Յօդուածոյ հեղինակութեան առիթ տուին. չը պիտի խօսիմ նաեւ այն փատանուն Մուսայ պէկի արարքի մասին, որ գրեթէ դեռ երէկ այնչափ զբաղեցուց կառավարութիւնը, հասարակութիւնը եւ հին ու նոր աշխարհաց մամուլները, եւ ոչ սոյն կարգի հարստահարութեանց եւ հալածանաց մասին, որոնք ամեն օր տեղի կունենան զանազան անկեանց մէջ, եւ որք Կարնոյ, Գում Գափուի, Սասնոյ եւ այլն խլրտմանց եւ ցընցմանց առիթ տուին, եւ այս աւուր հալածանքն ու գըր-

կանք իրենց կարգին ո՞վ գիտէ ի՞նչ ահագին ցնցումներ պիտի ծնանին։ Կուզեմ սակայն սա մատաղ հասակիս մէջ իմ եւ ընկերակիցներուս՝ բանտերու խորքին մէջ ենթարկուած բռնութեանց եւ չարչարանաց մասին երկու խօսք յաւելուլ եւ ապացոյցներ յառաջ բերել եթէ հարկ լինի։

Ծանօթ խնդրի առթիւ ձերբակալուեցանք, բայց ի՜նչ սոսկալի ձերբակալութիւն, ի՜նչ ահաւոր բանտարկութիւն։ Այն ցուրտ, խիստ ցուրտ ձմրան մէջ, այն տըխուր, սեւ սեւ գիշերներու մէն մի ժամեր՝ կարծես տարիներու դանդաղ երկարութիւնը ունէին եւ այդ բոլոր սեւ յիշատակներ դեռ կը ցնցեն տարաբաղդ զոհերուս ոսկորներն ու ամբողջ գոյութիւն։ Շնորհ ըրէք մի պահիկ երեւակայել գիշերը Կեսարիոյ բանտին մէջ.— կը լսէ՞ք սա աղէկտուր ճիչերը, յուսահատ աղաղակները, որոնց կը խառնուին գաւազանի հարուածներ։ Պատուհանէն ներս նայեցէք մի անգամ. տեսէք զոհերը ի գետին փռուած, յանձնուած սա կատաղի, անբարոյ, արիւնարբու ոճրագործներու անգթութեան, որոնք մեզ նման թէեւ բանտարկեալ՝ բացառիկ պաշտօն ունէին այս անգամ սանուրբ խնդրոյն միջամտելու, կառավարութեանն օգնելու մինչեւ որ Կորդեան հանգոյցը լուծուի։ Ակնարկ մը դարձուցէք սա անշարժ, կլոր արարածի վրայ. զոհերէն մին է դա։ Ցունուարի ամենացուրտ գիշերներէն մին, մերկացուցած, ձեռքերն ու ոտքերն իրար կապուած, սափորներով սառն ջուր կը տեղացնեն գլխին վրայ, մարմնոյն վրայ. եւ որպէս թէ այդ դիւային չարչարանքը չը բաւեր, գաւազանի եւ բիրերու հարուածներ կը տեղան մերկ, սառած, թմրած մարմնոյն վրայ. խեղդուկ հառաչներ միայն կարելի է լսել “աման, աման....”

Մ՚ի ուրիշ խորշի մէջ. տարաբաղդ զոհը մէկ ոտքէն գլխիվայր կախուած, 5-6 ժամէ ի վեր. դարձեալ մերկ խարազաններու կտրուկ հարուածներ կը փաթթուին մարմնոյն ամէն կողմէն. կաղաղակէ, կը պաղատի. «մեռա՜յ, կեցէք, գթացէք. . .», — «Սէօյլէ յէճէքմիսի՞ն, խընզըր», (խօզ դու, պիտի զրուցե՞ս գաղտնիքը): — «Ձեր ուզած կերպովը պիտի զրուցեմ, ազատ թողէք զիս», կը պատասխանէ ճարահատեալ զոհը:

Մ՚ի այլ խորշի մէջ, արդէն մի քանի օրէ ի վեր այս եւ այն կարգի չարչարանքներու ենթարկուող եւ սակայն պահանջուած խոստովանութիւնը եւ կամ յայտնութիւնը չընող զոհի մօտ կը տանին տաքցուցած երկաթեայ մի հերիւն *). երբ սա դեռ կը յամառի՝ անգթօրէն գործին կը մղեն տարաբաղդի անդամի մէջ. մահուան ճիչեր կը սարսեն խորշը, բայց ոչ կատաղի վըհուկների սիրտը. «խնդրեմ դանակ մը, դանակ մը կողխ, ժամ առաջ ազատիմ չարչարանքէս», կ՚աղաղակէ:

Մ՚ի քիչ անդին մի զոհ՝ ուրիշ մի գազանային խումբի մէջ. արիւնկզակ ոճրագործներ օրն ի բուն կըստեղծեն նոր միջոցներ, նոր եղանակներ տանջելու, չարչարելու, եւ կամ, իրենց բառովը՝ «խոստովանցնելու»: Զոհը օրերով չարչարուելով անդամալոյծ դրութեան մէջ է եւ դեռ «կը յամառի խոստովանելու». ի լրումն ամենայնի եւ մեծ յուսով յաջողութեան՝ ի գործ կը դնեն մի նոր, դիւային, արտասովոր եղանակ. խեցեղեն ջրամանի ծորակը կը մղեն զոհի նստատեղւոյն մէջ. կը փըչեն, կուռեցունեն, մինչեւ որ տարաբաղդը աներեւակայելի տանջանաց ներքեւ կիյնայ նուաղեալ. . .

*) Պիզ. միլ:

Բայց հերիք, հերի՜ք, ա՛լ փակեցէք ձեր աչքերն ու ականջներն սա դժոխային տեսարաններէն. . . . Աչահասիկ այս տանջանաց մի մեծ մասը իմ անձիս վրայ ի գործ դրուեցաւ. քանիցս տարուեցայ միւթէսարրֆ բաշայի առջեւ, որ գիս բարբարոս շուներու յանձնելով կը ըսէր, «տարէք, դեռ չէ խելօքցեր. քի՛չ մ'ալ կարդացէք վրան» (ծեծել)։ Զատ «կարդացին» վրաս, ծեծեցին, սոսկալի կերպերով տանջեցին եւ ես ճարահատեալ, խոստեցայ ինչ որ կուզէին որ խոսիմ. մահէն պրծելու մէկ ճամբայ կար, այն էր «խոստովանութիւններ» յերիւրել եւ կամ ուրիշները ղրպարտել։

Ընդհանուր դատախազը ամբաստանեալ ընկերակիցներուս այս կարգի յայտարարութեանց դէմ՝ քանիցս առարկեց ըսելով թէ եթէ իրօք այնպէս չարչարանք եւ բռնութիւն ի գործ դրուած է՝ պէտք էր ժամանակին բարձրագոյն ատեաններու բողոք բառնայինք եւ այլն։ Բայց միթէ կարելի՞ էր բողոք բառնալ. ամեն միջոցներ փակեցին մեր առջեւ. մեզ չարչարեցին մութի մէջ, խեղդեցին մեր ձայնը. և մինչեւ իսկ կերպով մը բողոքելու յաջողողներ ինչ օգուտ քաղեցին։ Ես ալ բողոքեցի կուսակալ Ապէտին փաշայի, երբ խնդրոյն քննութեան համար Կեսարիա կը գտնուէր։ Լըսեց բողոքս, տեղեկացաւ խօսքերուս դառն իրողութեան, բայց լռեց։ Ուստի դիւրին է մակաբերել թէ այդ բոլոր չարչարանքներ և բռնութիւն մասնաւոր հրահանգի մը համեմատ ի գործ կը դրուէին։

Տէր Նախագահ, թոյլ տուէք, երկու խօսքի մէջ ամփոփեմ մեր բուն նպատակը և այնպէս վախճան տամ պաշտպանողականիս։

Մ՚եր պահանջն է անիրաւութեան դէմ արդարու-

թիւն, անհաւասարութեան դէմ հաւասարութիւն, բռնու-
թեան եւ բարբարոսութեան դէմ քաղաքակրթութիւն,
ապահով կեանք, հանգիստ հաց։ Մենք ժողովուրդն ենք,
հասարակութիւնն ենք. հասարակութեան թշուառութեան
պատճառը մեր կեանքի գէշ, վնասակար պայմաններն են,
իսկ ատոնց բարեփոխութեանց արգելք են կառավարու-
թիւնը և պաշտօնեայք. իրաւունքը հասարակութեանն է.
հասարակութիւնը իր նուիրական իրաւունքները պիտի
պաշտպանէ, վաղ կամ անագան։ Մեր մէջ չիք խտրու-
թիւն ազգի, կրօնի և հաւատալեաց. յաչս մեր եղբայր
են ամենքին. մարդկութիւն գերազանց քան ազգու-
թիւն. ահա մեր դաւանանքը։ Կէտ մեր նպատակին է ա-
զատել հասարակութիւնը բռնութեան և կաշառակուրծ
պաշտօնէից անիրաւութեան ճիրաններէն և կեանքի գէշ
պայմաններէն և ստեղծել տնտեսական և հասարակական
ցանկալի կեանք։

Գիտենք որ այս կարգի մեծ խնդիրներ մեծաքա-
նակ զոհերով միայն կը լուծուին, և մենք այդ զոհե-
րու շարքէն լինելու պատիւն ու երջանկութիւնը ունինք։
Բայց դատարանդ եւ կառավարութիւն թող չը խաբէ
ինքզինք, խորհելով թէ մեր բանտարկութեամբ, դատա-
պարտութեամբ, ցկեանս աքսորանօք կամ տաժանակիր
աշխատութեամբ և կամ գլխատմամբ վախճան պիտի դըտ-
նի այս խնդիր.— ո՛չ ո՛չ։ Զի քաղաքակրթութեան լու-
սով օր քան զօր կը լուսաւորի հասարակութեան միտք,
և այս ըզգացում, գաղափար կը ծաւալի ամեն խաւերու
մէջ, եւ այսպէս մեր խնդիր, որ ժ ո ղ ո վ ր դ ա յ ի ն է,
կըզգենու կարեւորութիւն, զօրութիւն, վեհութիւն և մի
օր՝ յաղթանակ։

Իսկ արդ, ինչպէս կը տեսնուի, մեր գործոց ու վար-

մանց, խորհուրդին ու նպատակի մէջ „համրակութեան խաղաղութիւնը վրդովելու" ոչ մի կէտ կայ ընդհակառակը, մենք կողմնակից հասարակութեան՝ ուխտեալ թշնամիներ ենք ընդդէմ անիրաւութեան և բռնութեան։ Ահաւասիկ մեր պահանջն ու ցանկութիւն։ Այս պահանջի համար ապրիլ, մաքառիլ և եթէ հարկ լինի մեռնիլ՝ է և պիտի լինի մեր միակ պարտականութիւնը և գերագոյն երջանկութիւնը. հեռի՛ մենէ ոճրագործութիւն և կամ այլ խռովարար նպատակ. ժողովրդեան հարազատ զաւակներ և հայրենեաց համեստ եւ ճշմարիտ քաղաքացիներ ենք մենք։

Ես լսի։

29 մայիս, 1893

Գաղատիա Դատարան.

III

## ՊԱՇՏՊԱՆՈՂԱԿԱՆ ՃԱՌ ՄԱՐՏԻՐՈՍ ՃԻՎԱՆԵԱՆԻ

— Էվէքարացի (Կեսարիա) —

---

Տէր Նախագահ,

Կը տեսնէք որ տարիքս դեռ փոքր է, և սակայն սա փոքր հասակիս մէջ մի ամենամեծ ոճիրով ամբաստանուած եմ։ Շատ չարչարուեցայ, շատ տանջուեցայ, անարգուեցայ, այն աստիճան որ կեանքը արժէք չունէր աչքիս առջեւ և կամ աւելորդ մի բեռ էր ուսերուս վրայ։ Ի՞նչ էր պատճառը, որ զիս պատանիս, ենթար-

կեց այսպէս մի կարգ դժոխային տանջանաց։ Ազատութիւն տուէք ինձ որ պարզեմ։

Մինչեւ ցարդ շատ տեղ փորձեցի պարզել ներկայ խնդիրը, իր ինչ ըլլալը, բայց չը յաջողեցայ, ըստ որում պարտ էի նախ խնդրոյն պատճառը որոնել անոր համար յանդիմանեցին զիս, լռեցուցին զիս։ Վերջապէս քննիչներս ու չարչարողներս զիս չը հասկացան, և կամ չը հասկանալ կեղծեցին, և բնական է որ սխալ ներկայացուցին զիս և դատս։ Այժմ, քաջալերուած սա վերջին առիթէն, կուգամ պարզել խնդիրը այնպէս, ինչպէս որ է, վստահ լինելով որ ատեանդ, ըմբռնելով խնդրոյն կարեւորութիւնը, ամենալուրջ խորհրդածութեան նիւթ պիտի ընէ զայն։

Ներկայ դատիս սկիզբէն ի վեր «Հայկական խնդիր» անուան ներքեւ մի խնդիր կը շօշի բերնէ ի բերան. չը գիտեմ ի՞նչ աղբիւրէ յառաջ կուգայ այս գաղափար, այնինքն, խնդիրը «Հայկական» կոչել ու անցնիլ։ Ինչպէս ամեն քաղաքական ճշմարիտ մարմիններ, նոյնպէս մեր Հնչակեան կուսակցութիւնն ունի իր ծրագիրը և որ այժմ դատարանիդ սեղանին վրայ կը գտնուի. կը խնդրեմ կարդացէք, քննեցէք և պիտի տեսնուի թէ ազգի, ցեղի, կրօնի, հաւատալեաց ևն խնդիր չը կայ և ոչ ալ՝ մի թագաւորութիւն կազմելու խորհուրդը, զոր կը վերագրեն մեզ, անհունապէս մեղանչելով ճշմարտութեան դէմ։ Այս հիման վրայ՝ աւելի լաւ և արդարացի չէ՞ր լինէր՝ ներկայ խնդիրը փոխանակ միմիայն հայկականի, կոչել ժողովրդային, հասարակական, ինչպէս որ է։

Մեր պահանջը և զմեզ այնչափ չարչարանքի ու տանջանքի ենթարկող պարագան կուգայ կը կեդրոնանայ հանրութեան շահուն մէջ. հասարակութեան սուրբ

շահը, սուրբ իրաւունքը — ահա մեր նշանաբանը, ահա մեր կեանքը, ահա ապագայի յաղթանակը:

Շատեր աղօտ կերպով ըմբռնած են մեր գաղափարը և խիստ շատերուն ալ սխալ կերպով ներկայացուած է այն ու դեռ կը ներկայացուի իբր ամենամեծ ոճիր, մահացու մեղք, կործանող սկզբունք են. բայց պէտք է յիշել որ Հասարակութիւնը մանուկի կը նմանի. ծնողք երբեմն իրենց մանկտիքը շաքարէ եւ այլ նման անուշեղէններէ զգուշացնելու համար՝ քթերնին բերաննին ծամածռելով "տղաս, դառն է, լեղի է, թոյն է", խօսքերով զանոնք խաբել կուզեն թէեւ, բայց տղայն բնական հետաքրքրութեան բերմամբ՝ չը գիտցածը գիտնալու, չը ճաշակածը ճաշակելու և վերջապէս ճշմարտութեան տիրելու բուռն տենչով՝ իրմէ արգիլուած իրը կը դնէ բերանը, կը ճաշակէ նորա թաքուն քաղցրութիւնը, կը հասկնայ իր ծնողաց կեղծիքն ու ստութիւնը և այնուհետեւ ամեն միջոց կը գործածէ տիրանալու այն քաղցր իրին, գեղեցիկ իրին, զոր պահիկ մը առաջ իրմէ կարգիլէին. կաղաչէ, եթէ չը յաջողի՝ կուլայ, ոտքերը գետին զարնելով, եթէ դարձեալ չը յաջողի՝ կապստամբի և կը գողնայ, վերջապէս կը տիրանայ ցանկացածին:

Ներկայ խնդիրս կը կարծեմ թէ ամեն մասամբ կը յարմարի սոյն օրինակին. ինչ գոյն և անուն որ ալ տրուի անոր, Հասարակութիւնը միայն լսելով չը պիտի բաւականանայ, չը պիտի խաբուի. ճշմարտութեան վերահասու լինելու ցանկութեամբ պիտի քննէ, պիտի որոնէ պատճառն և սկզբունք, և այս՝ առանց դժուարութեան, ըստ որում, այսու ինք իր վէրքերը, իր պահանջները քննած պիտի լինի. և վերջապէս մի օր, մօտ ժամանակի մէջ, տեսնելով իր ցանկացածը, իր վէրքերու միակ դար-

ժանը, պիտի վազէ զայն ընդգրկելու, եթէ արգելուի՝ պիտի փշրէ ամէն արգելք ու պատուար, մինչեւ որ հասնի և սերտիւ փարի անոր։

Երբ ազգաց պատմութիւնը աչքէ անցունենք՝ պիտի տեսնենք յայտ յանդիման, որ ժողովրդային դժգոհութիւններ, տրտունջներ, խլրտումներ նորանոր յառաջդիմութեան դարագլուխներ բացած են։ Օսմ. տէրութեան համար մի՞ ուրախարար երեւոյթ պէտք չէ՞ նկատուի այս, որ ժողովուրդը իր դարաւոր քունէն կը զարթնու, կը տեսնէ իր մերկութիւնը, իր վէրքերը, իր երկրին տգեղութիւնը ու կըսկսի, կամ կը ցանկայ, ձեռնարկել միջոցներու, որ պճնէ իր անձը լուսով, բուժէ իր և իր երկրին վէրքերը, գեղազարդէ իր հայրենիքը արդարութեամբ, եղբայրութեամբ, ազատութեամբ, վերջապէս, մի առողջ քաղաքակրթութեամբ։ Այս է մեր վիճակ, այս է մեր միակ ցանկութիւն. կարճ խօսքով, կուզենք մարդու պէս ապրել և ոչ ստրուկի պէս։ Ուստի, երբ՝ այս գնահատելի գաղափարականը կը տածենք, կը պաշտենք և զայն՝ յօգուտ երկրին և հայրենեաց՝ իրականացնելու համար ընկերութիւններ կը կազմենք՝ կառավարութիւնը զմեզ “խռովարար” կանուանէ և կատաղաբար կը հալածէ։

Տէր նախագահ, ինքս խոնարհ մի պատանի, հազիւ բաժնուած դպրոցական սեմէն, հազիւ ոտք կոխած փորձառական կենաց մէջ, սիրտս արդէն կը զեղու դառնութեամբ, տեսնելով ամէն օր, ամէն ժամ, ժողովրդեան անտանելի կացութիւնը, որոյ գլխաւո՛ր պատճառներէն մին յոռի վարչութիւնն է։ Հարցուցէք մանաւանդ գիւղացիներուն. ամէնքն ալ առանց բացառութեան ձանձրացած են իրենց անձէն, կեանքէն ու կայքէն. կեանքը

շարունակ ճնշող լուծ մի դարձած է իրենց համար։ Հարցուցէք քաղաքացիին, բարեկեցիկ համարուած դասուն, վաճառականներուն, կրնա՞յ գտնուիլ մէկը, որ ապահով զգայ իր կեանքը, իր ինչքը և շատ մը տեղերու մէջ՝ իր ընտանի յարկին սուրբ պատիւը։ Կառավարութիւնը ինչ աչօք որ նայի ժողովրդեան՝ ժողովուրդն ալ նոյն աչօք կը նայի կառավարութեան. երկիւղ եւ կասկած երկուքին վրայ կը տիրէ հաւասարապէս. կառավարութիւնը ժողովրդեան համար ունի խստութիւն, ժողովուրդը կառավարութեան համար ունի նողկանք։ Այս մի բնական կարգ է. չէ՞ք հաւատար այժմ ինձ հետ թէ անհրաժեշտ անմիջական պէտք ունինք բարեկարգութեան, հիմնական բարեկարգութեան։

Տէր Նախագահ, ահա այս արդար դատի համար էր, որ տանջեցին զիս, չարչարեցին զիս մի այնպիսի եղանակաւ՝ որու նմանը, ոչ թէ առաւել կամ նուազ քաղաքակրթեալ երկիրների մէջ, այլ Աֆրիկէի գեռ վայրենի տնկիններին մէջ իսկ հազիւ կարելի է նշմարել. Հարուածներու բռնութեան ներքեւ գոյութեանս և այն առեննուան կացութեանս դառն գիտակցութիւնը միայն մնացած էր ինձ, երբ ի լրումն ամենայնի՝ շունչս գոցելով, վզիս չուանի պէս բան մը փաթթելով՝ քարերու վրայէն անզգայ իրի մը պէս քաշկռտեցին զիս ու դուրս բակը հանեցին։ Ոչ միայն ես, այլ նաեւ չարչարողներս և անոնց հրամանատարներ (զի այս բոլորը մասնաւոր հրահանգի մը համեմատ կը կատարուէր) կեանքէս բոլորովին յուսահատեցան. կիսամեռ դրութեան մէջ զիս խրկեցին տունս, որ գէթ մօրս գրկին մէջ մեռնելու հաճոյքը վայելեմ (և այս փոքրիկ շնորհ մի չէր ինձ համար)։ Իբր մի ամիս վերջ, կէս առողջ, կէս հիւանդ դրութեան

մէջ, զիս դարձնել ձերբակալեցին անկողնոյս մէջ և ահաւասիկ այսօր ատեանիդ առջեւ կը կայնիմ խանգարուած մի առողջութեամբ։ Եւ սակայն, արդեօք այս բոլորի համար մի օր տրտնջացի՞, և կամ արդեօք անիծեցի՞ այն ժամը, այն նպատակը, որ զիս այս ճամբուն և այս դառն վախճանին մղեց. — ո՛չ, հազա՛ր անգամ ոչ. կի ճշմարտութեան սիրոյն համար կը կրեմ այս բոլորը փառաւոր մի դատի, հոյակապ մի նպատակի համար ոչ միայն հանգիստս և առողջութիւնս՝ այլ եւ կեանքս տալու պատրաստ եմ։ Այս բոլորը արդէն կանխատեսելով ուխտեցի „ազատութեան միշտ ճանապարհով“ երթալ։ Այո՛, ես, ինչպէս եւ իմ բոլոր ընկերներ, մեր աչքին առաջ ունէինք այս բոլորը և աւելին. բայց միեւնոյնատեն լեցուած ենք մեր դատի վեհութեան գիտակցութեամբ և նորա յաղթութեան անխախտ հաւատքով։

Կը բողոքենք ի դիմաց ժողովրդեան, առհասարակ պաշտօնեաների բռնութեան, անիրաւութեան եւ խեղճ ժողովուրդին կեանքը տզրուկի պէս ծծող կաշառակերութեան դէմ. կը բողոքենք երկրին մէջ տիրող անմրդարութեան, հարստահարութեան եւ անապահովութեան դէմ. կը բողոքենք տուրքերի յարաճուն ընթացքին եւ հաւաքման անտանելի եղանակին դէմ. խստիւ կը բողոքենք մամլոյ, կրթութեան կաշկանդման դէմ և այն ամեն պաշտօնական և անպաշտօն հալածանքներու եւ բռնաբարութիւններու դէմ, որոնց յայտնի նպատակը յինել կերեւի սպաննել մեր մէջ ամեն ազնուական ձգտում և յառաջդիմական շարժում։

Եւ ուստի, քանի որ այս է իրողութիւնը իր պարզութեան մէջ, քանի որ այս է մեր բարի նպատակ, քանի որ այս է մեր անձնուէր ուղղութիւն՝ ինչո՞ւ զմեզ կո-

չիլ խռովարար, եւ կամ՝ վերին աստիճանի ոճրագործ։ Ոճի՞ր է միթէ բարի բաներու ցանկալ. ոճի՞ր է միթէ ընկճեալ հասարակութեան իրաւունքներուն պաշտպան կանգնիլ. ոճի՞ր է միթէ լուսաւորուիլ, զարգանալ, ապրիլ մարդավայել կեանքով։ Գիտցէք միայն, թէ մեր մասին ատեանէդ արձակուելու դատապարտութեան վճիռը ապագայի մէջ մեր արդարացումը եւ փառքը պիտի լինի։ Այս կէտ կը մնայ ձեր լուրջ խորհրդածութեան։ Իմ մարմնոյ ինչ կուզէք այն վճռեցէք. խիղճս արդէն հանգիստ է. կը հաւատամ դատիս յաղթանակին։

29 մայիս 1893

Գաղատիա Գաստարան.



## IV

## ՊԱՇՏՊԱՆՈՂԱԿԱՆ ՃԱՌ ՔԵՐՈՎԲԷ ՓԱՓԱԶԵԱՆԻ

— Պոլակասեցի (կեսարիա) —

---

Տէր Նախագահ,

Բնականապէս ուրախ ենք, որ այս ցանկալի առիթը կը ներկայանայ մեզ, ըստ որում, ամիսներէ ի վեր անորոշ և խիստ անտանելի դրութեան մէջ, անհամբեր կըսպասէինք այս օրուան։ Թոյլ տուէք ինձ սակայն նախ՝ գոհունակութիւնս յայտնել բանտի պաշտօնեաներուն ձեռքով ծեծուելուս համար. . . ըսել կուզեմ՝ միայն մէկ անգամ ծեծուելուս համար։ Համեմատաբար հանգիստ ենք տեղւոյս բանտին մէջ. թէեւ շղթաներ և. գունտեր բա-

ւական ծանր են, բայց հոս սկսան բուժուիլ կեսարիոյ բանտին մէջ մեր նստած վէրքերը. թէեւ ունինք դեռ բաւական թուով ընկերներ, որոնց առողջութիւնը խանգարուած է տանջանքներու սաստկութեան պատճառաւ և մէկն ալ զոհ տուինք բանտին մէջ, յանձին Արսէն Տէօքմէճեանի ընտիր եւ անմեղ երիտասարդին, որու ոտքէն շղթան մինչև մահուան նախորդ օրը միայն հանեցան հանել: Երկրորդ, կուգամ խոնարհաբար ձեր ամենալուրջ խորհրդածութեան յանձնել հետեւեալները. ձեր ներողութիւնը խնդրելով բացատրութեանցս պարզութեանը համար, զի միջակ դաստիարակութեամբ խանութպան մի եմ, բայց անկեղծօրէն պիտի խօսիմ և համարձակ՝ ճշմարտութիւնը միայն պիտի խօսիմ. բժիշկներու խօսող հիւանդներ ծաղկազարդ ոճով խօսելու պէտք չունեն:

“Ներկայ խնդիրս ժամանակէ մը ի վեր օրուան խընդիր դարձած է. ամեն շրջանակի մէջ անոր վրայ կը խօսուի, և կառավարութիւնը վերջերս միայն, վերջին դէպքի առիթով, իր մասնաւոր ուշադրութեան առարկայ ըրած է զայն: Բայց ասկէ մի հակասութիւն կելլէ առջեւս, որը հազիւ կրնամ հասկնալ: Յայտնի է ձեզ թէ Պերլինի դաշնագրութեան 61-րդ Յօդուածը կընքուելէն եւ չը գործադրուելէն ի վեր՝ անպակաս խլրտումներ տեղի կունենան հոս հոն. հարկաւ ատոնք աննըշանակ խլրտումներ չէին եւ ոչ ալ հաճոյքի համար կատարուած. բայց կառավարութիւնը զանոնք կը հերքէր, անոնց գոյութիւնը կուրանար: Երբ մի քիչ սաստկացան այդ խլրտումներ՝ անոնց “սրիկայական„ կամ „բախտախնդիր“, “ազգակային„ անուններ տրուեցան. իսկ այս վերջին առիթով կառավարութիւնը զմեզ կստիպէ, կը ծեծէ, 10-20 տեսակ նորահնար տանջանքներով կը չար-

չարէ, որ խոստովանենք և հաստատենք գոյութիւնը մի յեղափոխական ընկերութեան. ինչո՞ւ ժամանակ մը առաջ հերքել և այսօր հաստատել ջանալ: Տաճկական առածը "մըզրագ չուվալա սղմազ" կըսէ (նիզակը տոպրակի մէջ չը պահուիր). վէրքը ցոցելով ցաւելէ չը դադրիր և ոչ ալ ցաւը ուրանալով ցաւ լինելէ կը դադրի. ո՛չ ապաքէն խոհեմութիւն և միակ ճամբան է վէրքերը բանալ, ցաւերը պատմել, ապա լրջօրէն քննել պատճառները և յետոյ ձեռնարկել ամենաազդեցիկ դարմաններու:

Այո, տէր Նախագահ, այլ եւս անուրանալի է, կայ արդարացի դժգոհութիւն ժողովրդեան ամէն խաւին մէջ, կայ խլրտում, շարժում, և ինչ որ մխիթարական է մեզ, իսկ սպառնական է կառավարութեան համար, այն է թէ այս շարժումը, չը նայելով ամէն կարգի և ձեւի տակ ի գործ դրուած հալածանքներու, օր քան զօր կը ծաւալի ու կընդհանրանայ օդի պէս: Հոգ չէ, ինչ անուն կուզեն թող տան անոր, "տղայական", "սրիկայական", "խռովարար", "յեղափոխական", եւն. եւն., խնդիրը կայ ու կը մնայ իր վիթխարի երեւոյթով. վերջապէս մի քաղաքական խնդիր է այն, և քայլ մը ալ առաջ երթալով պիտի ըսեմ, Թրքական կառավարութեան համար մահու եւ կենաց խնդիր է այն: Կը տեսնէք Բանտակիցներուս մէջ կան լրջամիտ ուսուցիչներ, պատկառելի կըղերականներ, բարեհամբաւ վաճառականներ, համեստ խանութպաններ և արհեստաւորներ, եւ ճիշդ նոյն կարգը կարելի է նշմարել Երկրիս բոլոր բանտերուն եւ մինչեւ իսկ աքսորավայրերուն մէջ, որոնք օր աւուր հոյ բանտարկեալներով խճողուելու վրայ են: Այս համեստ երեւոյթ ինքնին ապացոյց մի է հաստատելու բաւական թէ՝

խնդիրը կարծուածին պէս ոչ «տղայական» է ոչ «սրի-կայական» եւ ոչ ալ «խռովարար», այլ, մէկ խօսքով, ան-հատական եւ հանրային իրաւանց խնդիր է այն. ընդ-հանուր երկրին բարեկարգութիւնը մատնանիշ ըրող ատի-պողական խնդիր է այն։

Քանիցս հարցուեցաւ ինձ թէ՝ ի՞նչ ըսել կուզէի անհատական եւ հանրային իրաւունք եւ կամ բարեկար-գութիւն բառերով. ուրախութեամբ պատասխանեցի այս հարցման, որ արդէն խնդրոյն հոգին էր, եւ իբր վար-ձատրութիւն՝ ապտակներու՝ եւ բարակ գաւազաններու հարուածներ ընդունեցայ, եւ այն՝ Կեսարիոյ կառավար-չի ձեռամբ։ Թոյլ տուէք ինձ այժմ պարզել խնդիրը իմ դիտած տեսակէտովս, համառօտիւ եւ պարզօրէն։

Կը յիշէք որ Թուականէս ճիշդ 15 տարի առաջ Պերլինի Վեհաժողովին մէջ՝ հայ ազգի պահանջներուն նկատմամբ՝ մի յօդուած խմբագրուեցաւ, 61-րդ Յօդ-ուածը, որը վեց հզօր տէրութիւններ վաւերացուցին, եւ բրիտանական կառավարութիւնը, Կիպրոսի դաշնադրու-թեամբ, երաշխաւորը հանդիսացաւ հսկելու նոյն Յօդ-ուածի գործադրութեան վրայ։ Այդ Յօդուածի առա-ջարկութիւնը եւ օտար տէրութիւններու, ինչպէս նաեւ մեր երկրի տէրութեան կողմանէ ստորագրուիլը՝ ինքնայայտ ապացոյց են ցուցնելու թէ խնդրողներ իրաւունք ունէ-ին իրենց պահանջներու մէջ, թէ երկիրը անհրաժեշտ պէտք ունէր բարեկարգութեան։ Արդ, ներեցէք, հոս մի պարզ հարցում ընեմ. խնդրողներու այդ իրաւունքներուն արդար գոհացում տրուեցա՞ւ եւ խոստացուած բարե-կարգութիւններ իրականացա՞ն։ Սկսելով հասարակ գոր-ծաւորէն մինչեւ համեստ քաղաքագէտը, ամենօրեայ դէպ-քերու ու իրողութիւններու հետ միաձայն ամենուն խիղ-

ճը ոչ ո պիտի պատասխանէ, այս հարցման։ Եւ այս տխուր պարտազանցութեան շնորհիւ, բնականապէս, իրեր այժմ աւելի յոռի եւ աւելի արգահատելի դըրութեան մէջ են. դժգոհութեան աղաղակներ բազմապատկուած եւ բիւրապատկուած են, խլրտմունք գետերու ընթացքին պէս, երթալով կուռին ու կը ծաւալին. եւ կարծես դիտմամբ նոր միջոցներ կըստեղծուին շարունակ նոր՝ եւ ի հարկէ առաւել արտասովոր՝ դժգոհութիւններու ծնունդ տալու համար։ Թէ ո՞ւր պիտի յանգի այս ճամբան՝ դժուար չէ գուշակել։ Սխալ է ենթադրել թէ դժգոհ տարրը հայ տարրն է միայն. առանց ազգի եւ կրօնի խտրութեան՝ ամբողջ հասարակութիւնը դժգոհ է, ըստ որում ճնշող լուծը բոլորի վրայ կը ծանրանայ, թէեւ մասնաւոր եւ յաւելուածական ճնշումներ կը հեղինակուին հայոց համար՝ կասեցունելու զանոնք զարգացման շաւղին մէջ։ Դէպքերու այս մերկ իրողութեան առջեւ՝ ենթադրենք թէ այսօր Պերլինի 61-րդ Յօդուածը իր բոլոր լեցունութեամբ իրագործուէր, արդեօք յայնժամ խնդիրը վախճան պիտի գտնէ՞ր։ — Կը համարձակիմ եւ կը ցաւիմ ըսելու՝ ոչ։ Այսօր չարիքն այնչափ արմատացած է՝ որ Պերլինի այդ դեղը վայրկենական թմրութիւն մը միայն կըրնայ յառաջ բերել, անբույժ թողլով վէրքը։

Տէր Նախագահ, հայրենեաց ամենահաւատարիմ բարեկամները և անձնուէր որդիքը կը դաւանինք մենք զմեզ. կը ցաւինք որ մեր ամեն տեղի եւ ամեն կարգի թըշնամիները կը ջանան զմեզ եւ մեր խնդիրը, որ հանրութեան խնդիրն է, տարբեր գոյնով ներկայացունել եւ ամէն կերպով մեզ հալածել։ Բայց ճշմարտութիւնը եւ հասարակական նոր ուսմունքներ, նոր սկզբունքներ,

առաջին անգամ աշխարհի ներկայացուցիչներու բաժինը՝ քաղաքական եղած չէ ընդհանրապէս։ Թուի թէ մենք ալ, ըստ որում ճշմարտութիւնը՝ եթէ ոչ առաջին անգամ՝ գէթ բարձրաձայն՝ կը հռչակենք, բացառութիւն մը չը պիտի կազմենք։ Այդ հոգ չէ։

Շնորհ ըրէք, խորհեցէք, ի՞նչ անձնական շահ կրնայ զմեզ մղած ըլլալ այդ գործին, եթէ ոչ ընդհանուրի շահը, ընդհանուրի իրաւունքը, որու՝ մէջ է արդէն անհատինը։ Կրնա՞նք մինթէ լռել եւ անտարբեր աչօք նայիլ այն ամէն կարգի կեղեքմանց եւ հարստահարութեանց վրայ, որոնք ամէն ձեւի տակ, մէկ կողմէն քրդաբնակ լեռներու եւ դաշտերու մէջ, միւս կողմէն կառավարական պաշտօնատանց մէջ, հաւասարապէս ի գործ կը դրուին։ Կրնա՞նք մինթէ լռել, երբ տեսնենք թէ հասարակաց հայրենիքը մէկ կողմէն գողերու և աւազակներու որջ է դարձած եւ միւս կողմէն մէկ իրական դժոխք է եղած իր հաւատարիմ բնակչաց համար. ո՛չ կենաց ապահովութիւն կայ, ո՛չ ընչից ապահովութիւն եւ ո՛չ ալ պատուոյ. եւ այլ եւս ո՞վ կը համարձակի ուրանալ՝ երբ այս բոլոր չարիք ոչ միայն Հայաստանի մութ խորերուն մէջ, այլ ցորեկ օրով մեր մէջ, մեր աչքերուն առջեւ ի գործ կը դրուին։ Գնացէք Կեսարիա, ուր դեռ մի քանի ամիս առաջ սարսափը արիւնէ մարմին հագած փողոցներու և հրապարակներու մէջ կը շրջէր. անցէք պարտէզները, այգիները. ո՞ւր են հոյաշէն ամարանոցները.— աւա՜ղ աւեր ու քանդ մոխրակոյտեր պիտի ցցուին ձեր աչաց առջին. մոլեռանդ պաշը-պօզուգներ, ոստիկաններէ քաջալերուած և անոնց միացած, գործեցին այդ բոլոր շահատակութիւնները եւ ի վարձատրութիւն այս քստմնելի քա-

ջագործութեան, կառավարական գանձէն երեքական ոսկի պարգեւ ստացան։ Անցէք Էֆքարա, միտք բերէք տարւոյս Յունուար 8-ը, երբ գիւղը պաշարուած էր մի կատաղի ամբոխէ առաւել քան 600 հոգիներէ բաղկացեալ և որոնց խիստ մեծ մասը պաշը-պօզուքներ, զինուած դաշոյններով, կացիններով, բիրերով, տոպրակներով (աւար փոխադրելու համար), եւ ալ գիւղին է երեւակայել թէ այս կատաղի պատրաստութիւն ինչ արդիւնքներ կրնար տալ. Նախատինք, ծեծ, չարչարանք, պատւոյ բռնաբարութիւն, յափշտակութիւն, աւեր ու քանդում... եւ ալ շարունակեմ... Այս բոլոր աղէտներ անցան այդ համեստ և անպաշտպան գիւղացիներու գլխէն։ Ըսէք, խնդրեմ, այս կեանք է՞, թէ տանջանք։ միթէ Թուրքիոյ մէջ ապրիլ դեռ տառապիլ պիտի նշանակէ։ Այս երեւոյթներու առաջ բնական չէ՞ որ ժողովուրդը կատաղի և որոշէ (ինչ որ ընդհանուր մի հակացողութիւն դառնալու վրայ է) քաջ մահով մեռնիլ մի անգամ, փոխանակ չարաչար մեռնելու ամեն օր։ Երբեք, երբեք չափազանցութիւն ըրած չեմ ըլլար, երբ ըսեմ թէ այս երկրի համար իրաւունք կոչուած բանը նշանակութիւն չունի և արդարութիւնը գոյութիւն չունի. մեզ հետ բոլոր թիւրք հասարակութիւնը վկայ է այս յայտնութեան... կաշառակերութիւնը համարձակ և բացարձակ երկրին տիրող օրէնքը դարձած է, որ արդէն իր տեսակին մէջ անհրաժեշտ միջոց մի է երկիրը կործանելու։ Այո, տէր Նախագահ, այո, իրաւունքէ զրկուած, ապահովութենէ զրկուած, պատիւէ զրկուած, լքուած, ճնշուած ստրուկ ենք, ստրուկ. մեր աչքեր բացուեցան ու զայդ զգացինք. եւ այս դառն իրականութիւնը դեռ չըզգացողներ պիտի զգան զայն.

երբ լուսաւորուին. եւ գործի համար բարեբաղդաբար՝ շատ պիտի լուսաւորուին, քանի որ կառավարութիւնը, աւելի բուռն միջոցներով կը շարունակէ իր կործանիչ ընթացքը, ճնշելով, կաշկանդելով, հալածելով, տանջելով, բանտարկելով, աքսորելով ժողովրդեան ամենէն համեստ եւ պատուական տարրը:

Հաւատացէք, տէր Նախագահ, որ այս դառն իրականութեան հանդէպ՝ սրտի անկեղծ մորմոք միայն կըզգանք. այդ մորմոքը, բարի նախանձը, ժողովրդեան վիճակը, վսեմ գաղափարները մղեցին զմեզ այս սուրբ գործին, այսքան տանջանաց նիւթական մի շատ զրկողութեանց եւ ուրիշ շատ կորուստներու: Մի կարծէք սակայն թէ՝ ասով ներկայ խնդիրը ընկճուած եւ մեր արդար դատը յաղթահարուած պիտի լինի: կարելի է գաղափարը կրող այսինչ, այնինչ անհատներու դէմ մաքառիլ, անոնցմէ զոմանս բանտարկել, աքսորել եւն, բայց այդ գաղափարը կայ ու պիտի մնայ. զուր է մարտնչիլ գաղափարի դէմ, մանաւանդ երբ սա ճշմարտութիւն մի է. եւ ուստի կառավարութեան կողմէ այս հալածանքը մեզի դէմ՝ օդը ծեծել կը նշանակէ: Բայց այդ ալ նպաստաւոր է մեր դատին, ըստ որում „հալածել տարածել է“..... *)

(Ընդմիջեալ)

29 մայիս, 1893

Գաղատիա Դատարան.

---

*) Փափազեանը իր ձերբակալուած օրէն սկսելով ամեն առիթով համարձակ եւ յանդուգն եղանակով խայտառակած է կառավարութեան ամեն կարգի զեղծում-

V

## ՊԱՇՏՊԱՆՈՂԱԿԱՆ ՃԱՌ ՅԱԿՈԲ ՊԱՀԼԱՒՈՒՆԻԻ

— Կէմէրէկցի (Կեսարիայ) —

---

Տէր Նախագահ,

Տարիներէ ի վեր առիթ ունեցած եմ ժողովրդային կեանքը խիստ մօտէն դիտելու, ուսումնասիրելու, մանաւանդ ներքին կեանքը գիւղերու և գիւղացւոց, որոնց շատերուն հետ անձնական հաշիւներ ու գործեր ալ ունեցած եմ. ուստի ինչ որ պիտի խօսիմ՝ պէտք է նկատել իբր արդիւնք անաչառ դիտողութեանցս եւ անձնական փորձառութեանս։

Ամեն երկրի ժողովուրդ իր գանգատը ունի. երբեմըն երբեմն կը տրտնջան, կը դժգոհին, կը յուզուին. մենք ալ, իբր ժողովուրդ, մեր գանգատները ունինք, մեր ցաւերը, մեր վէրքերը ունինք. բայց ուրիշ ժողովրդոց և մեր մէջ սա յայտնի տարբերութիւնը կայ թէ՝ ա-

---

նելը։ Երբ դատարանը տեսաւ որ կարելի չէ այս անձնուէրին լռեցնել առանց տպասելու դատի վախճանին՝ գիշերով յանկարծակի արթնցնելով քնէն եւ ձեռքերը կապելով կը հեռացունէ զայն — թէ ո՞ւր, յայտնի չէ։ Երկրորդ օրը նախագահը կը ծանուցանէ թէ „քերովբէն մտաւոր հիւանդութիւն ունենալուն համար (??!!) յիմարանոց ղրկուեցաւ։ Այդպիսով Փափազեանի ճառը մնացած է ընդմիջեալ։

նոնք իրենց ցաւերը ըսելու ազատ են, մենք լալու ազատութիւնն ալ չունինք, մինչ մեր ցաւերը խիստ դառն են, մեր վէրքերը խոր և թերեւս մահացու։ Ա՛յս պատճառաւ է որ մեր աղաղակներ զսպուած լացի մը բնութիւնը ունեն. խոշոր հեկեկանքներ են անոնք և կամ, եթէ կուզէք, հրաբուխի մը պարբերական ցնցումներուն կը նմանին։

Կը տեսնեմ որ մեր դատաստան հրապարակաւ տեղի կունենայ. այս երեւոյթ յոյժ քաջալերական է ինձ և, կը հաւատամ, բոլոր ամբաստանեալոցս համար եւս։

Մարդ եթէ զգաստ է, հաճոյքի համար չիլար և ոչ ալ կը հալածէ իր ստուերը։ Բնական եւ տիեզերական օրէնք է, որ ամեն արդիւնք պատճառ մը կենթադրէ եւ ախտ մը կամ չարիք մը արմատէն բուժելու համար, ճարտար մասնագէտք նախ պատճառը կորոնեն, կուսումնասիրեն եւ ըստ այնմ կը պատրաստեն դեղ և դարման։ Եւ արդ, տէր նախագահ, ձեզ ի դիւրութիւն հետեւեալները կը յանձնեմ ի խորհրդածութիւն։

Ներկայ ժողովրդային տագնապի գլխաւոր պատճառներէն հետեւեալ չորս կէտերն յառաջ կը դնեմ այստեղ հետեւեալ կերպով. — 1) Բազմազան տուրքեր և եղանակ գանձման։ 2) Պաշտօնական զեղծումներ։ 3) Ոչ-քրիստոնեայ տարրին մոլեռանդութիւնը և հարստահարութիւնը քրիստոնէից դէմ. 4) Անհատական եւ ազգային իրաւունքների կաշկանդում եւ շարունակական սեղմումներ յամենայն դէպս։

1) Բազմազան տուրքեր եւեղանակ գանձման։

Կը չափազանցեմ արդեօք երբ ըսեմ թէ՝ չը կայ մի այլ ժողովուրդ, որ Թուրքիոյ ժողովրդեան չափ ընկճըւած լինի ուղղակի եւ անուղղակի, անունով եւ անա-

նուն տրոց ներքեւ։

Արնույի մի երկար ցուցակ շինել տրոց, բաժնել զանոնք դասակարգերու և ցուցնել, թէ եւրոպական ո եւ է ժողովուրդի մէկի փոխարէն՝ առնուազն եօթը տեսակ տուրքեր ունենք. տուրքեր, որոց, թողունք գոյութիւնը, անունները անգամ ծանօթ չեն քաղաքակիրթ ազգերու։ Դուք զայս լաւ գիտէք արդէն. մէկ օրինակ միայն հերիք լինի։ Այգիի տէր մը պարտի վճարել որոշ մի տուրք այգիի գետնին, այսինքն հողին համար, մի տուրք անոր ծառերուն համար, մի տուրք անոր որթերէն քաղելու խաղողին համար (ուխսաթ թէզքէրէսի), մի տուրք անոր որթերէն քաղած խաղողին համար, մի տուրք անոր խաղողէն վազած գինիին համար, մի տուրք անոր խաղողի չաչէն (ճիպրէ) վազելու օղիին համար, մի տուրք վազած օղիին համար, են, են։ Երբ այս բոլորը մանրակրկիտ հաշիւէ մը անցունենք, ի մէջ բերելով նաեւ այգւոյն բուն արժէքը, տիրոջ ըրած ծախքերը եւ այս ամենուն տոկոսը, պիտի տեսնենք, որ կառավարութիւնը եւ այգետէրերը, այգւոյն ընդհանուր արդիւնքէն գրեթէ հաւասար բաժիններ առած են. թողունք որ նուազ արդիւնաբեր տարիներ միշտ ի վնաս այգետիրոջ կանցնեն։ Ահա ինչո՞ւ տեղ տեղ այգիներ կը քակեն արտերու կը վերածեն, տեղ տեղ ալ, խաբուսիկ յուսով առաւել շահաւորութեան, արտեր այգիներու կը վերածեն։ Խեղճ հողատէրը չը գիտեր ի՞նչ ընէ, ո՞ր ճամբան բռնէ. շատ մը կորստաբեր փորձերէ վերջ՝ կամ խոպան կը թողու արտը եւ կամ վատ գնով կը ծախէ զայն մի այլ բաղդախնդիրի։ Եւ ահա ինչո՞ւ երկրագործ դասը, որ փոքր թիւ մը չի կազմեր, այս երկրի ամեն անկեան մէջ շարունակ պարտքի տակ կը հեծէ, և այդ պարտք,

շնորհիւ վաշխառուներու անգութ եւ կործանիչ դրութեան, կ՚աճի օր աւուր, կ՚ուռճանայ այն աստիճան, որ հողատէրը կը պարտաւորի մնալ անհող եւ անյոյս։ Ահա ինչու մի այլ դասակարգ ալ, որոց այս կործանարար դրութենէն ձանձրացած, կը վաճառէ իր բոլոր գոյքն ու կեանք եւ կը գաղթէ օտար երկիր։ Հողագործութիւնը, որ այս երկրին մէջ մարդուն գլխաւոր բարի մատակարարը, խնամող մայրը եղած է, այսպէս անարգ դրութեան մէջ պահել՝ կը նշանակէ ընդարձակ ճամբաներ պատրաստել մեծագոյն չարեաց։ Եւ, աւա՜ղ, արդէն իսկ փճացած է գիւղային կեանքը. Ժողովուրդը կը սնանկանայ օր աւուր, արեւելքի պատմական ճոխութիւնք կը ցամաքին։ Մնացեալ բոլոր տուրքեր պէտք է դատել այս տեսակէտով, սա տարբերութեամբ միայն, որ անոնցմէ խիստ շատեր բոլորովին աւելորդ՝ եւ ուստի բոլորովին անարդար՝ տուրքեր են։ Բազմաթիւ օրինակներ կրնայի յառաջ բերել բայց մէկ երկուքով կը բաւականանամ։ Վերջերս նոր մի տուրք հնարուեցաւ—ճամբու տուրք. Ժողովուրդը կանոնաւոր կերպով, թէպէտ միշտ դժկամակելով, կը վճարէ այդ տուրքը. բայց ո՞ւր են ճամբաները. քիչ բացառութեամբ՝ բոլորն ալ փլած, ճոխ առիթ կընծայեն կառապաններու սոսկալի հայհոյանք եւ անէծք տեղալու, և տարիներով կը մնան աննորոգ։ Ո՞ւր կերթայ գանձուած ստակը։ Թող որ տեղ տեղ ալ, ինչպէս Կեսարիայէն Էվէրէկ, թէեւ շինուած ճամբայ չը կայ, բայց դժբաղդ ժողովուրդը կըստիպուի ամեն տարի որոշեալ տուրքը վճարել այդ գոյութիւն չունեցած ճամբուն համար. . . . . Իսկ կրթական (մէարիֆի) տուրքը՞, զոր քրիստոնեայք կը բռնադատուին տալու, առանց վայելելու պետական դպրոցաց մէջ կրթուելու արտօնութիւնը. . .

Եւ քանի որ մէկ կողմէն ժողովուրդը մահու քրտինքով կը թրջուի այս անհատնում տրոց ներքեւ, անդին միւս կողմէն պատուանշաններով կը մեծարուին այն հանճարներ, որոնք նոր տուրքի աղբիւրներ կը ցուցնեն, նոր ծըրագիրներ կը յօրինեն՝ ժողովուրդը լաւ եւս կեղեքելու եւ ցամաքեցնելու համար. Նորօրինակ հնարիչներ, որոնք աւելի կործանարար են ժողովուրդի համար, քան հնարիչք բազմահարուած հրազէններու։

Գալով հաւաքման եղանակին, բացարձակապէս մի դժոխային անէծք դարձած է այդ խեղճ ժողովուրդի գլխին։ Սարսափի, սուգի եւ դառն արտասուաց օր է այն օրը, երբ հարկահաններ, ոստիկաններ, վաշխառուներ ձիերու վրայ նստած՝ խումբ խումբ կը մտնեն գիւղերը։ Սոքա բացէ ի բաց կը կեղեքեն ժողովուրդը, կը թալանեն գիւղերը. եթէ դրամ չը գտնեն գիւղացւոյն քով (դժբաղդաբար շատ անգամ չեն գտներ)՝ բռնի եւ վատ գնով կը ծախեն նորա անասուններէն սկսելով մինչեւ տանը ամենապիտանի կահն ու կարասին։ Գիւղացիք՝ այդ սուգի եւ սարսափի օրերուն մէջ՝ պարտին կերակրել այդ մարդերու եւ ձիերու բազմութիւնը։ Շատ գիւղերու մէջ, հաւաքման այդ ահաւոր օրերը գէթ մի քանի շաբաթ յետաձգելու համար, իրենց կարեւոր պէտքերէն զրկուելով կը ճարեն 15-20 մէճիտիյէ կաշառք, որով հարկահաններ կը հեռանան գիւղէն՝ ուրիշ օրուան յետաձգելով իրենց սարսափելի արարքը։ Ամեն գիւղ, առանց բացառութեան, այրած, խանձած է այս կրակէն։ Թող որ աւելի ներսերը՝ խեղճ արարածներուն ոչ միայն ինչքն ու կայք, այլ նաեւ ընտանի յարկին սուրբ պատիւը զոհ ինկած կը գտնենք այդ գազանաբարոյ մարդոց ճիրաններուն. բայց պիտի լռեմ այս կէտը, զի ան-

կարելի կը թուի ինձ լեզուով եւ կամ գրչով. նկարագրել այս վիթխարի չարիքը, որոյ կատաղութիւն կաւելնայ ժողովրդեան աղքատանալու համեմատութեամբ։

2) Պաշտօնական զեղծումներ.

Կառավարական պաշտօնէից ապօրէն ընթացքը քըննադատել ներելի չէ այս երկրին մէջ, ուր մամուլն եւ բեմը չեն վայելեր իրենց կոչման արժանի և անհրաժեշտ ազատութիւն։ Սակայն, բարեբաղդաբար, այդ կարգի սեղմումներ չեն կրնար ներգործել անհատական եւ ժողովրդային գաղափարներու եւ համոզմանց վրայ։ Այսօր, սկսելով ամենէն ուշիմ, լրջմիտ դասակարգէն մինչ ամենախոնարհ եւ պարզուկ դասակարգը, մի ընդհանուր համակցողութիւն է դարձած թէ՝ կ ա շ ա ռ ք Թ ի ւ ր ք ի ո յ մ է ջ գ ե ր ա գ ո յ ն օ ր է ն ք է։ Այս օրէնք քաջալերուած և հաստատուած կը գտնենք պետութեան պատժական օրինաց կաշառքի յօդուածոյն տրամադրութեամբ, թէ „կաշառատուն եւ կաշառառուն պատժապարտ են գրեթէ հաւասար պայմաններով“։ Այս պայմաններու ներքեւ կաշառատուն, առանց իրեն մի նոր եւ աւելի մեծ վնաս պատճառելու, չը կրնար բողոքել կաշառառուին դէմ, եւ կաշառառուն այսպէս քաջալերուած, անպատկառ շարունակ կը գործածէ այս անարգ շահավաճառի կործանարար միջնորդը, կաշառքը։

Մ՜ի պարագայ, զոր Սեբաստիոյ կուսակալութեան մէջ՝ խիստ մօտէն դիտելու առիթներ ունեցած եմ, անհնարին վիշտով, և ըսեմ նաեւ, զզուանքով լեցուցած է ամեն ճշմարիտ հայրենասիրի սիրտը, անխտիր՝ իսլամ, ոչ-իսլամ։ Այդ կուսակալութեան մէջ, ինչպէս ուրիշներու մէջ, կառավարական պաշտօններ ա ճ ո ւ ր դ ո վ կը ծ ա խ ո ւ ի ն։ Զարմանքով նշմարուած է, որ տարեկան

36—48 լիրա թոշակ բերող պաշտօններ գնելու համար տենդոտ թիկնածուներ կը մատուցանեն 100, 150 երբեմն 200 էն աւելի լիրա, վստահ լինելով անշուշտ սա իրողութեան վրայ թէ՝ մի՛ անգամ բարձացեալ պաշտօնը ձեռք բերելէ վերջ՝ կրնան դիւրաւ քաղել տասնապատիկը և բազմապատիկը իրենց վատնածին։ Քաղել. ... եւ ոսկից. — անշուշտ ժողովուրդէն։ Կաշառք կուզուի ամեն տեսակ դատի համար։ Կաշառք կուզուի ծուռ, անարդար դատերը շտկելու, արդար հոչակելու համար. կաշառք կուզուի արդար դատերը ծռելու համար. կաշառք կուզուի դատերը տեսնելու, քննելու համար, եթէ ոչ՝ ատոնք կենթարկուին մոռացման, կը մնան երբեմն տարիներով. օրինակներ անպակաս են, կրնայի ատոնցմէ յառաջ բերել տասնեակներով Գաղատիոյ բանտէն միայն։ Վերջապէս, կաշառք կուզուի թէ յանցաւորէն, թէ անմեղէն, թէ անիրաւէն, թէ անիրաւեալէն, թէ գողցողէն, թէ գողցուողէն, թէ մարդասպանէն, թէ սպանեալէն... ըսել կուզեմ սպանեալի ազգականներէն... Կաշառք, կաշառք, կաշառք, այս է օրէնքը, այս է հոգին մի նոր և արտասովոր կազմակերպութեան, որ „կառավարութիւն" անուան ներքեւ ժողովուրդը և երկիրը փըճացնելու կը ծառայէ յաջող կերպով։ Ահա ինչու ժողովուրդը աս վերջին տարիներուս մէջ խոյս կուտայ կառավարութեան և դատարաններու դռնէն, զոհելով երբեմն մինչեւ իսկ կարեւոր դատեր, և կամ զայնս կարգադրելով իր մէջ։ Սակայն պաշտօնեայք գիտեն ճարպիկ ճամբաներ հնարել և ուզածնին դատ կամ դատաստան կոչուած ծուղակին մէջ ձգել։ Սա մեր ծանօթ խնդրով մանաւանդ, քաղաքականի պատրուակին ներքեւ կը յաջողին իրենց ճանկերուն մէջ ձգել ընտիր

որսեր։ Այս կազմակերպեալ ապօրէն դրութիւն բնականապէս վնասակար է նաեւ տէրութեան գանձուն, թող որ արհեստին մէջ վարպետ եղող պաշտօնեայք կը համարձակին կողոպտել նաեւ տէրութեան գանձը. օրինակ, ի միջի այլոց մի կուսակալ *), որ այս պահուս Պօլիս կը գտնուի եւ կը քրտնի իրմէ պահանջուած ճամբու նորոգման հաշիւը տալու, ուսկից իւրացուցած է մի քանի հազար ոսկւոյ համեստ գումար մը։ Այսպէս ճամբաներու եւ այլ բարենպատակ հաստատութեանց շինութիւնք մեծ փորձութեանց աղբիւր կը դառնան արծաթամոլ պաշտօնէից։ Հոս բնական մի հարցում կ'ելլէ մեր առջեւ. ինչո՞ւ պաշտօնեայք կաշառակեր են։ Առանց խորը մտնելու, ներեցէք, բնական պատասխանը տամ եւ անցնիմ. — որովհետեւ կառավարութիւնը, նախ, լաւ չի վճարեր իր պաշտօնէից խիստ մեծ մասը, մանաւանդ ի գաւառս. երկրորդ, շաբաթներով, երբեմն ամիսներով կը յետաձգէ վճարումն արդէն անբաւական թոշակներու. երրորդ, գինեմոլութիւն, հեշտասիրութիւն եւ այլն, որք անհաւատալի համեմատութեամբ կը ճարակին ի պաշտօնեայս, դռներ կը բանան մեծ ծախքերու. չորրորդ, վարպետ պաշտօնեայք, թուի թէ հորիզոնը ամպոտ տեսնելով կը փութան ժամ առաջ ապահովել իրենց ապագան. հինգերորդ, ամեն գէշ պաշտօնէութեան բնական ախտն է այդ։ Մի երկրորդ հարցում կը հետեւի բնական կարգով. ինչո՞ւ բաւական եւ ժամանակին չեն վճարուիր պաշտօնեայք, ինչպէս նաեւ՝ ինչո՞ւ ծանր եւ նոր տուրքեր կը դրուի ժողովրդեան վրայ։ Այդ հարցմանց պատասխանը մէկ

*) Սեբաստիոյ նախորդ կուսակալ Մ է մ տ ո ւ հ պէ յ։

է. այն է՝ կառավարութեան դրամային անվախճան տագնապը և յոռի, անկարգ վարչութիւնը։

3) Ոչ-քրիստոնեայ տարրին մոլեռանդութիւնը եւ հարստահարութիւնը քրիստոնէից դէմ։

Ցորդ ականջի լուրով միայն կը լսէինք այն խժդժութիւններն, կեղեքումներն ու հարստահարութիւններն, որոնք քրդերու ձեռամբ ի գործ կը դրուէին Տարօնոյ Հայոց վրայ։ Այժմ տխուր առիթը ներկայացաւ մեզ մեր աչքերով տեսնելու այդ կեղտոտ արարքներ։ Դեռ մի քանի ամիս առաջ մոլեռանդութիւն և կատաղութիւն ձեռք ձեռքի տուած, սարսափի երեւոյթով, կը պտտէին Կեսարիոյ մէջ և իր շրջակայքը, մանաւանդ Պալակասի և Էվ քարա, որպէս նաեւ Եօզկաթի մէջ և իր շրջակայքը և այլուր։ Գոյքերու յափշտակութիւն, տուներու կործանում, եկեղեցեաց և տուներու հրկիզում, կիներու բռնաբարում, կենաց կորուստ և այլ ի՞նչ. . . Այս բոլորը մեր շրջանակին մէջ, մեր աչքերուն առջեւ տեղի ունեցաւ, և առինք նախաճաշակն մոլեռանդութեան այն տարրին, որ իր ներշնչումներն կըստանար ոչ թէ իր սրտէն, ոչ, այլ ուղղակի կառավարութեան պաշտօնեաներէն։ Մեծ է թշուառութիւնն այն անտանելի կացութեան, որու տակ կը հեծեն, կը մաշին և ամեն օր կը մեռնին մեր եղբայրներու և քոյրերու մեծ բազմութիւն ի Հայաստան։ Մեծ է չափն և աստիճան Մուսա բէկի և իր նախորդներուն և յաջորդներուն շահատակութեանց։ Հիմա լաւ կը հասկնանք՝ թէ կառավարութիւնը ինչու զինեց քիւրտերը և ինչու շքանշաններով մեծարեց կարգ մը բէկեր (թէպէտ, ներեցէք հոս միջանկեալ մը. միշտ կը յուսայինք և դեռ կը յուսանք թէ՝ այդ զինուած խուժաններ այդ զէնքերը օր մը իրարու դէմ, օր մ'ալ

կառավարութեան դէմ պիտի դարձունեն)։ Մէկ կողմէն բարբարոս, անուղղայ ցեղերը զինել և անոնց գործած հազար ու մէկ շահատակութեանց աչք գոցել, միւս կողմէն նորքին կերպով և շատ մը տեղեր՝ բացէն հրահանգել և գրգռել խուժութիւնը քրիստոնէութեան դէմ՝ կը նշանակէ պաշտօնապէս քաջալերել այդ տարրի մոլեռանդութիւնը և այսու կրակի ու արեան պաշար պատրաստել մեծ եւ ահեղ մի օրուան համար։ Եւ ալ տարակուսի տեղի կը մնայ, երբ կը տեսնենք որ նոյն կառավարութեամբ վարուած մի կարգ պաշտօնեաներ անձամբ կը ծեծեն, կը չարչարեն խեղճ քրիստոնեայ զոհերը և կամ տանջել կուտան զանոնք արիւնկզակ ոճրագործներու, ինչպէս օրինակ, ի միջի այլոց, Կեսարիոյ ներկայ կառավարիչը, որ իր հնարած և գործադրած սոսկալի տանջանքներուն համար կիմանանք թէ շքանշանով վարձատրուելու վրայ է։

4) Անհատական և ազգային իրաւունքների կաշկանդում և շարունակական սեղմումներ յամենայն դէպս. ուրիշ խօսքով՝ պաշտօնական հալածանք։

Սկսելով կեանքի և գործառնութեան ամենախոնարհ՝ աստիճաններէն մինչեւ բարձրագոյնը, հայը՝ իբր անհատ և հայութեան՝ իբր մի որոշ ազգային մարմնի, ճամբան խճողուած կը գտնենք Հակառակ արգելքներով եւ խիստ կաշկանդումներով։ Պարզ խրճիթ մը շինելու եւ կամ 1—2 աւուր ճամբորդութիւն մը կատարելու համար պէտք կըլլայ անցնիլ մի կարգ ձեւակերպութիւններէ։ Ընկերութիւն մը կազմելու, դպրոց մը բանալու, ո եւ է բարենպատակ ձեռնարկութիւն կատարելու համար պէտք է ճակատիլ անհնարին դժուարութեանց դէմ, որոնք „օրէնք", „հրաման" և այլ անուններու ներքեւ կը պահ-

ունին։ Դժուարութիւն ամէն տեղն, ամէն ուրեք, այս է բաժին ամէն մի հայուն. սա՝ ծնելու համար, մեծնալու համար, դաստիարակուելու համար, դիրք մը գրաւելու համար, ամուսնանալու համար, հայր լինելու համար, վերջապէս գործելու համար, ապրելու համար, մեռնելու համար՝ պարտի սիրտ ի դող անցնիլ մեծ շարք մը դժուար ձեւակերպութիւններէ, որոնք շատ անգամ հնարուած բացարձակ արգելքներ են։

Մի ժամանակ „սահմանադրութիւն“ անուն շարք մի ողորմելի կանոնադրութեանց պատրանքին ներքեւ գործեցինք, շարժեցանք, կարծելով թէ ունինք առով գէթ մի քանի տարտամ առանձնաշնորհումներ։ Այսօր այն ալ փճացաւ և պիտի փճանար. ոչ միայն անոր համար, որ կառավարութիւնն այդ ըրաւ, այլ թէ ողորմելի, սահմանափակ էր և անհամապատասխան չէր հասարակութեան աւելի լայն պահանջներուն։ Մի խիստ, մանրակրկիտ, ներքին հսկողութիւն կը ծանրանայ մեր անհատական, ընտանեկան եւ ժողովրդային գործոց ու առընչութեանց վրայ. կը հետախուզուին մեր ամենաչնչին շարժումներ. մեծ պատասխանատուութեան և կամ քննութեան կարող է ենթարկել զմեզ աւելորդ մի կէտ, որ պատահմամբ կը սպրդի նամակի մը մէջ։ Նամակ, հեռագիր, թերթ, գիրք, թուղթ անհուն կասկածանաց և երբեմն, անել նեղութեանց կենթարկեն զմեզ։ Գոնէ հրատարակուած մի օրէնք ըլլար, որ գիտնայինք թէ ի՞նչ կարդալու ենք և ի՞նչ կարդալու չենք, ի՞նչ տեսակ բառեր գործածելու ենք եւ ի՞նչ տեսակներէ հրաժարելու ենք, վերջապէս, ի՞նչ ընելու ենք և ի՞նչ ընելու չենք։ Կասկածի, սարսափի մթնոլորտի մը մէջ կապրինք. չենք համարձակիր երեք հոգի մէկտեղ նստիլ ու խօսիլ, վախ-

նալով զի՛. մի գուցէ երբեքն մէկը լրտես լինի եւ կամ մի այլ լրտես հսկէ մեր գումարումը։ Լրտեսային մի անհուն դրութիւն. ծայրէ ի ծայր ողողած է երկիրը, վրդոված է մեր ամենօրեայ կեանքը, թունաւորած է մեր հաճոյքները։ Սա այսօր մի անարգ շահավաճառ դարձած է, որուն համար մասնաւոր օրէնքներ հաստատուեցան վերջերս, որոց վերջնոյն տրամադրութեան համեմատ՝ ամեն անհատ պարտի լրտեսը լինիլ իր ընկերին, այսինքն, տեղեկագրել իսկոյն կառավարութեան, ինչ որ „քաղաքականի“ գոյն ունի։ „Քաղաքական“, այս է նոր քաղաքականութիւնը, որ ոչ սահման ունի, ոչ կեդրոն, ոչ սկիզբ։ Չենք հասկնար ինչ յարաբերութիւն ունի այդ „քաղաքական“ը եկեղեցւոյ մը գմբէթին հետ, այս ինչ սուրբի անուան տօնին հետ, կրօնական շարականներու եւ երգոց հետ, դպրոցի այսինչ դասագրքի հետ, այսինչի անուան կամ մականուան հետ, այսինչ ձեւ փէսի եւ այնինչ ձեւ մօրուքի հետ։

Ո՛չ, տէր Նախագահ, ո՛չ, չենք կրնար լռել, երբ կը տեսնենք կառավարութեան մէջ մի հաստատ դիտաւորութիւն եւ, ըսեմ, կազմակերպեալ դրութիւն՝ ամեն կերպով արգիլելու մեր անհատական յաջողութիւնները եւ մեր ժողովրդային յառաջդիմական ձգտումները։ Այո՛, կը շեշտեմ, հաստատ մի դիտաւորութիւն՝ զմեզ զրկելու լուսաւորութեան բարիքներէն, զմեզ ճնշելու, պղտիկցնելու եւ ժողովուրդը տնտեսապէս իսպառ աւերելու։ Բոլոր նշաններ զայս կը հաստատեն։ Հայոցս թիւը երթալով կը պակսի պետական պաշտօններու մէջ. ընկերութիւններ կը խափանուին, դպրոցներ կը ջնջուին, մամուլը կոյր եւ անարգ մի գործի դարձած է արդէն, հարուստներ բանտն են, ազդեցիկներ բանտն են, արհես-

տաւորներ, գիւղացիներ, աշխատաւորներ բանտն են, եկեղեցականներ բանտ են կամ յաքսոր, կանայք ալ կան բանտերու մէջ, ծեր ալ, պատանի ալ. դատապարտուներ պատկառելի մի թիւ կը կազմեն բանտերու եւ աքսորավայրերու մէջ։ Ուշագրաւ մի պարագայ.— լոկ Գաղատիոյ 84 բանտարկեալց 13-ը ուսուցիչ եւ 2-ը եկեղեցական են. ահա պերճախօս մի համեմատական, թող որ արդէն եւ մնացեալք պատուական քաղաքացիներ են, որոնք ազդեցիկ վաճառական, փաստաբան, արհեստաւոր եւ կամ գործաւոր։

Տէր Նախագահ, ահաւասիկ ներկայացուցի ձեզ չարիքը իր արդեանց եւ իր պատճառներուն մէջ։ Մտացածին ցնորք մը չենք հալածեր. մեր ցաւը կը պատմենք, մեր վէրքը կուլանք և դարման կը փնտռենք։ Եթէ երբեմն երբեմն խլրտումներ, ցոյցեր կը պատահին հոս հոն, պէտք է նկատել զայնս պերճախօս արտայայտութիւններ զսպուած մի ցաւի, արդար մի բողոքի. կը հաւատանք մեր բողոքի արդարութեան, արդար է այն ամեն տեսակէտէ։ Այս հաստատ համոզմամբ նուիրական պարտք պիտի սեպէ ամեն զգայուն հոգի մղել մեր դատը. այո, անվհատ և անընդհատ մղել զայն շատ զօհողութեամբ. մղել զայն, եթէ հարկ լինի արեան մէջ և մարտիրոսաց դիակներու վրայ։ Լաւ է մեռնիլ, քան ապրիլ ստրուկ կեանքով։

29 մայիս, 1893
Գաղատիա Դատարան.



# ԿԱԽԱՂԱՆ

ԹՈՐՈՍ ԾԱԹՈՒԿԵԱՆ, ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՐՋՈՒՄԱՆԵԱՆ, ԿԻՒԼՊԷՆԿ ԲԱՐՍԵՂԵԱՆ (*Համալեան*), ՄԻՀՐԻՃԱՆ ԹՈՐՈՍԵԱՆ (*Խանապախեան*) *և* ՓԱՆՈՍ ՆԱՂՈՒՊԵԱՆ, *անդամներ Հնչակեան կուսակցութեան, նախապէս ենթարկված զարհուրելի տանջանքների, ապա Գաղատիոյ դատարանով, իբրեւ հայրենիքի ազատութեան համար գործողներ, դատապարտվեցան* ՄԱՀՒԱՆ ՊԱՏԺԻ, *որ հաստատվեցաւ սուլթանի կողմից և* ԳՈՐԾԱԴՐՎԵՑԱՒ ԿԱԽԱՂԱՆԻ *միջոցով Յուլիս* 18-*ին, լուսադէմին։ Կախաղանի տակ հինգ հերոսների վերջին անմահ աղաղակն էր* —

„ԿԵՑՑԷ ՀԱՅԱՍՏԱՆ, ԿԵՑՑԷ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ!“

Գաղատիայ.

„Ամեն բան կատարուեցաւ. Գաղատիոյ մահուան դատապարտուածներէն հինգ հոգիի վրայ պատիժը գործադրուեցաւ Յուլիսի 18-ին, լուսադէմին։ Հինգ հերոսներն այլ եւս չը կան. կախաղանը խեղդեց նոցա։ Այդ հերոսները հայոց յեղափոխական շարժման առաջին նահատակներն են, որ կեանքէ կը զրկուին սուլթանի պաշտօնական ֆերմանով։ Երբ կը հանեն կախաղան, նոցա քայլուածքը, նոցա դէմքի արտայայտութիւնը ցոյց կուտային հաստատակամութիւն մը, արիութիւն մը որ շատ քիչերը կրնան ունենալ մահուան առջեւ։ Նոցա երեսների վրայ ջիղ մը անգամ չը շարժեցաւ, տխրութեան հետք մը չերեւաց, թէեւ բանտի մէջ թիւրքի սոսկալի տանջանքներէն նիհարցած երեսներ, խոր ինկած աչքեր և չարչարուած դէմքեր ունէին։ Զարմանալի գրաւիչ հպարտութիւն մը կը տիրէր նոցա ամեն մի շարժուածքին մէջ։ Պաղ, սոսկացնող սարսուռ մը կանցնէր մարդուս ներսը, երբ աչքը կը բարձրացնէր հերոսների վրայ և կը դիտէր նոցա անխռով դէմքերը, որոց վրայ կարծես կը նկատուէր ոգեւորութիւն մը։ Ո՛վ գիտէ, թէ ինչ կը մտածէին այդ ժամանակ այդ հինգ անձնուրաց նահատակները, բայց նոցա վերջին ոգեշունչ աղաղակը կը մատնէ իրենց վերջին մտածումը, իրենց վերջին հոգը. դիւցազնական կերպով կախաղանի տակ կայնած, երբ չուանը պիտի անցնէին նոցա վզերէն, յանկարծ լսուեցաւ ահաւոր ձայն մը — “Կեցցէ Հայաստան, կեցցէ Յեղափոխութիւն....„ Հազիւ վայրկեան անցաւ... Նոքա այլ եւս կախուած էին...“ *)

*) Արտատպ. „Հնչակ“-ի Nr 8-ից, 1893 Թ.

***

*Գաղատիայի դատարանում բոլոր ամբաստանվածների թիւը, ինչպէս յայտնի է, 43 էր։ Արձակված դատավճիռները յետոյ թեթեւ կերպով մեղմացրին, բացի հինգ հոգու դէմ տրված մահուան դատավճռից, որ եւ գործադրվեցաւ։ 1893 թ. վերջերը, Կ. Պոլսի կենտրոնական բանտում ամեն տեսակ նեղութիւններ կրելուց յետոյ, վերջապէս այդ դատապարտվածներից 9 հոգի ուղարկվեցան աքսոր Դարպ-Թարապօլիս, 14 հոգի՝ Աքրա և 10 հոգի՝ Ռոդոս։ Մնացած 5 հոգին, որոնց մէջ Անտօն Ռշտունին, տակաւին գտնվում են միեւնոյն տեղը, կենտրոնական բանտում, ենթարկված ամենածանր մի վիճակի։*

# ՑԻԳԱՐ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ
# ԱԺԳԱՅԱԿԻ

## ԹՈՐՈՍ ՇԱՔՈՒԿԵԱՆ
## ԵՒ ԻՐ ԸՆԿԵՐՆԵՐԸ

*(կենսագրական տեղեկութիւններ)*

Թորոսը ծնվել է Սեբաստիայի կուսակալութեան Կիւրին քաղաքում։ Իր հայրը, մահտեսի Վարդավառը, զբաղվում էր գիւղական առեւտրով (կեզէկճի)։ Իր վեց զաւակների ամենափոքրիկն էր Թորոսը։ Տկարակազմ, կարճահասակ, գլուխը կնտակ, նիհար մի երիտասարդ էր նա։ Իր փոքրիկ հասակում նա հիւանդոտ ու թոյլ, սակայն միեւնոյն ժամանակ ընդունակ մի մանուկ էր։ Չը նայած փոքրիկ Թորոսի տկար կազմին, այդ ժամանակուայ "Արամեան" դպրոցի տեսչութիւնը նրան տվել էր մի հսկայ նահապետի անուն. Զարմայր էր կանչում նրան։ Անուանափոխութիւնը նորաձեւութեան կարգն էր անցել այդ ժամանակները դպրոցներում. թէեւ աշակերտները ոչինչ չէին ուսանում, բայց գոնէ հսկայի անուններ էին ստանում։ Խորենացու պատմած նախնական դարերի առասպելական հերոսները վերակենդանացած էին յանձին Արամեան դպրոցի աշակերտների։ Թորոսին

կարծես ծաղրելու համար դիտմամբ էին կպցրել այդ հսկայի անունը, բայց վերջը կը տեսնենք, թէ նա ինչպէս արդարացրեց իրան, հաւատարիմ հետեւող գտնըվելով իր նահապետական անուան։

Ռուս-Թրքական պատերազմի վերջերն էր։ Տաճկաստանն անտանելի դրութեան էր մատնված։ Կողոպտված հայ ժողովուրդն աջ ու ձախ էր ընկնում իր ընտանիքըն ապրեցնելու համար։ Թրքական մոլեռանդութիւնըն իր ծայրայեղ աստիճանին էր հասել։ Ռուսաց, „Ղարա կեավուրի“, ինչպէս Թիւրքերն էին նրան անուանել, յաղթութիւններն աւելի և աւելի էին գրգռում տաճիկ սինքլորին հայ տարրի դէմ։ Ամբողջ լեռները դասալիք զինւորների աւազակախմբերով էին ծածկըված։ Այդ պատճառով Թիւրքիայի խուլ անկիւններում գտնված գաւառների բնակիչներից շատերը, չը կարողանալով տանել այլ եւս իրանց շրջապատող տեղային աննըպաստ հանգամանքներն, այս ու այն կողմ էին գաղթում, տեղափոխութեամբ միայն լաւ ու հանգիստ վիճակի տիրանալու յուսով։ Այդ գաղթականական հոսանքից ազատ չը մնաց եւ Կիւրինը։ Ստուար մի բազմութիւն սկսաւ դիմել Մ ա տ է ն, Ս ո ւ ն ղ ո ւ ր լ ո ւ, Գ ա ղ ա տ ի ա, Ե օ զ ղ ա տ եւ այլ եւ այլ տեղեր։ Թորոսի հայրը, իր Պ օ զ ո ւ խ ի գիւղերում ունեցած վաճառականական շահերն եւս աչքի առաջ ունենալով, խառնվեցաւ այդ գաղթականների հետ եւ հաստատվեց Եօզղատում։ Պատանի Թորոսը սկսաւ յաճախել Եօզղատի „Վահանեան“ դպրոցը։ Ամենափոքրիկը լինելով ընտանեկան շրջանում, նա ապրում էր ամենափափուկ կեանքով և իր եղբայրների ու քոյրերի enfant gaté-ն էր (շփացած, երես տված տղայ)։ Բայց նա չը կարողա-

ցաւ շարունակել այդ կեանքը։ Իր դեռ շատ մատաղ հասակում կորցրեց հօրը, եւ մօրը հետ վերադարձաւ իր ծննդավայրը՝ Կիւրին։ Եօթը երկար տարիներ անցել էին, բայց նա շատ քիչ փոփոխութիւն էր կրել իր դիմագծի եւ իր հասակի զարգացման մէջ։ Նա այդ ժամանակ քիչ թէ շատ սովորել էր հայ եւ տաճկերէն լեզուները, յարմարվել էր Եօզղատի միջավայրին եւ սիրել էր այդ երկիրը՝ իբր իր երկրորդ ծննդավայրը։

Իր եղբայրները, Կիւրինում մենակ թողնելով նրան իր այրի մօր հետ, հեռացան։ Թորոսն այդ ժամանակ ժողովելով իր բաժին ընկած փոքրիկ կարողութիւնը, նրանով դեղագործի խանութ բաց արեց, որ շատ հեշտ է Թիւրքիայում և իր արհեստի բերմամբ առնչութիւն ունենալով Թիւրք պաշտօնեաների հետ, բաւական ծանօթացաւ նրանց ներքին աշխարհին, որը քօղարկված էր տաճկական կեղծ քաղաքավարական ձեւական խօսքերով։ Նա շփվեցաւ նրանց հետ եւ շատ մօտից կարող եղաւ ուսումնասիրել նրանց իր մտաւոր կարողութեան աստիճանի համեմատ և սկսաւ զզուանքով նայել նրանց վրայ։ Այդ գծուծ ու վատոգի պաշտօնեաները սկսան վատնել մեր դեղագործի փոքրիկ կարողութիւնը։ Նա տեսնում էր այդ, բայց լուռ էր մնում. լռում էր ակամայ, որովհետեւ ռ ա ե ա (հպատակ) էր և ամեն պարագայում ստիպված էր գլուխ խոնարհեցնել նրանց առջեւ, կատարել նրանց ամենափոքրիկ մի քմահաճոյքը։ Եւ ո՞վ կարող է Թիւրքիայում խօսել տաճիկ պաշտօնեաների դէմ. այն օրից, երբ պաշտօնական սրի փոկը քարշ է անում նա իր մէջքից՝ ամեն բան պրծնում է.—անբարոյականութեան ճամբան այլ եւս բացվում է նրա առջեւ. Նա սանձարձակ վխտում է աջ ու ձախ. ապ-

թանքներ է գնում և փոխարէնը չէ վճարում, կամ իր ուզածի չափ է վճարում. ծաղրում է, հայհոյում է, նախատում է և շատ ժամանակ մտրակում «անպիտան, խող գեավուրներին»: Հալալ է համարում ուտել նրանց փողը, փճացնել նրանց հարստութիւնը և փաստեր է առաջ բերում իր վայրենի գործերին նպաստաւոր, առարկելով թէ «խողից մի մազ անգամ փրցնելը վարձք է»: Ի հարկէ, զգայուն սրտերի համար անհնար է այս ամենը տանել. պէտք է կամ համակերպել և գոհացընել թիւրք պաշտօնեաների ամենափոքրիկ քմահաճոյքը և կամ քաշուել հրապարակից: Թորոսի խանութն ենթարկուեցաւ ամենամեծ վտանգների և կորուստների. քանի քանի անգամ կնքեցին նրան, առարկելով թէ վկայագիր է հարկաւոր և ամեն անգամ բանում էին, երբ կաշառքն իր շլացուցիչ ու հրապուրող տեսքով մտնում էր նրանց գրպանը: Բայց վերջ չըկար այդ խայտառակ ձեւականութիւններին. չը կարողանալով տանել պաշտօնեաների բացարձակ լկտի ընթացքը, նա փակեց իր խանութը և ինչ որ մնացել էր իր ձեռքը հաւաքելով, մտադրուեց իր հօր արհեստին հետեւել—դառնալ գ է ղ է կ ճ ի (գիւղական շրջիկ վաճառական):

* * *

Չորս երկար տարիներ էին անցել Տառուկեանի Եօզղատից Կիւրին դառնալուց ի վեր. այդ ժամանակամիջոցում նա զգալի կերպով զարգացել և առնացել էր. նա թեւակոխել էր քսան տարեկան հասակը և երիտասարդական աշխոյժը սկսել էր հետզհետէ երեւան գալ:

Խանութը փակելուց հէնց մէկ-երկու շաբաթ յե-

տոյ, հրաժեշտ տալով իր այրի մօր, նա ուղեւորեցաւ Քօզոլս, Եօզղատի գիւղերը, որ առհասարակ կիւրինցիների առեւտրի կենտրոնն էր։ Հետեւելով փերեզակ շըրջուն վաճառականների դրութեան, նա գնեց հուլուններ, փոքրիկ հայելիներ, քիչ քանակութեամբ կտաւ, բասմա եւ այլ եւ այլ զգեստեղէն եւ գիւղական զարդերի վերաբերեալ բաներ եւ սկսաւ շրջել թէ հայ եւ թէ տաճիկ ու քուրդ գիւղերը։ Նա, այդ enfant gaté-ն, ենթարկվեցաւ ամեն տեսակ զրկանքների, չարքաշ կեանքի պայմանների, որ երազում անգամ չէր տեսել։ Թողած իր հօրենական տունը, ուր ամենամեծ քնքշութեամբ էր մեծացել, նա սկսաւ գիւղացիների ք ո ւ ր ջ ի կտորների վրայ պառկել, փալասների մէջ փաթաթվել, որ ամեն տեսակ աղտոտութիւններով լիքն է միշտ։ Բայց, իբրեւ Կիւրինի ճշմարիտ զաւակ, ամենայն համբերութեամբ տանում էր այդ նոր կեանքը։ Առհասարակ կիւրինցիի համար չարքաշ կեանքը ժառանգական է դարձած. բընակվելով քարոտ լեռներով շղթայված խոր ձորերում, նա ստիպված է միշտ իր ապրուստի պէտքերը հոգալ դրսերից։ Լինելով երկու նաւահանգիստների, Ալէքսանդրէտի (Իսկէնտէրունի) ու Սամսոնի մէջտեղ, ճամբաների վերջին ծայր անկանոնութիւնների պատճառով նա երբէք յարաբերութիւն չունի այդ նաւահանգիստների հետ։ Նա չէ կարող արտահանել իր բերքերը, իր ձեռագործները և հետեւաբար, խզված լինելով բոլոր վաճառաշահ քաղաքներից, հարկադրված է ցիր ու ցան պտտել այս ու այն քաղաք փոքր-ինչ ստակ շահելու և ապա վերադառնալով ծննդավայր, իր ընտանիքի հետ մի քիչ հանգիստ կեանք վարելու, եթէ տեղային հանգամանքները թոյլ տան և պետական կոչված աւազակ-

ները չը կողոպտեն։

Ըօջուն վաճառականութիւնը բոլորովին փոխեց Թորոսին։ Միաժամանակ գործ ունենալով իրարից ժամերով հեռի շատ գիւղերում, նա ստիպված էր ճանապարհորդել գրեթէ միշտ մենակ. այդպիսով անվեհերութիւնն ու քաջութիւնը սկսան կամաց-կամաց դառնալ նրա բնաւորութեան յատկութիւններ։ Պէտք էր տեսնել նրան նստած իր սիրական ձիու վրայ, րեվօլվէրը կապած մէջքին, սուրը քարշ արած ձախ կողից, շէշխանէ հրացանն ուսին, գիւրջիի աշագին եափինջին վրան առած և համարձակ պտտելիս գիւղից գիւղ։ Ով որ չէր հաւատում, թէ դա, այդ քաջատես անձը, այն վտիտ, թուլամորթ փերեզակ Թորոսը լինէր, որը մի ժամանակ վախենում՝ էր դուրս գալ տանից։ Բայց դա՛ արդարեւ նոյն ինքն այն Թորոսն էր։ Այդ փոքրիկ մարմնում պահված քաջասրտութիւնը միանգամից ընդ միշտ երեւան եկաւ հետեւեալ դէպքում։

Մէկ անգամ իր ճամբորդութեան ժամանակ նա մըտաւ մի գիւղ՝ իր ձիուն ջուր տալու։ Աղբիւրի մօտ կային մի քանի հայ ճամբորդ երիտասարդներ, որոնք կիւրինցի շրջիկ վաճառականներ էին և ուզում էին ջըրել իրանց ձիերը, բայց մոլեռանդ տաճիկ գիւղացիները թոյլ չէին տալիս։ Թորոսը բանի տեղ չը դնելով կատաղած խուժանի սպառնալիքները, խլեց դոյլը մի տաճիկ երիտասարդից, ջրեց բոլոր ճամբորդների ձիերը և ապա իրանը։ Դրա վրայ թիւրքերը սկսան նախատել, հայհոյել, քարերով խփել նրանց։ Այդ ընթացքից Թորոսի արիւնն անմիջապէս խփեց գլխին. Նա դուրս քաշեց րեվօլվէրը և ուզում էր արձակել թիւրքերի վրայ, երբ միւս հայ ճանապարհորդներն աղաչանքով միջա-

մտեցին։ Թիւրք խուժանը սարսափած ցրվեցաւ։ Ամբողջ գիւղը լսելով մի գեավուրի այս անսպասելի յանդգնութիւնը, փիրերով, հրացաններով, քարերով, տղամարդ, կին ընկան նրա ետեւից։ Նստած իր ղըր (սպիտակ) ձիու վրայ՝ նա անխռով առաջ էր խաղում, երբ յանկարծ նշմարեց 20-25 ձիաւոր, որ գոռում, գոչում էին, հրացան արձակելով իր ետեւից։ Ասպանդակը խփելով ձիու կողին, նա սկսաւ կայծակի նման ընթանալ, երբ մէկից իր առջեւը ցցված տեսաւ մի խումբ երիտասարդներ, որ լեռնային ամենամօտ ճանապարհով կտրել էին նրա ուղին և ուզում էին կալանաւորել նրան։ Մի երիտասարդ համարձակեցաւ նրա ձիու սանձից բռնել. մօրակի մի հարուած և մերկ ռէվօլվէրի տեսքը բաւական եղան հեռացնելու այդ կտրճին և իր ընկերներին։ Թորոսն անվտանգ առաջ գնաց, ապշած թողնելով իր ետեւից ընկած ահագին բազմութեան։ Նոյն օրը նա իջեւանեց մի թիւրք գիւղի քեահեայի մօտ, փրր տաճիկ, Շ ա պ ա ն անուան տակ։ Այդ օրուայ դէպքը տարածվել էր ամեն կողմ և նոյն իսկ իջեւանած տան մէջ խօսում էին մի «բռունցքի չափ» երիտասարդ գեավուրի մասին, զարմանում էին նրա յանդուգն համարձակութեան վրայ. շատերը պնդում էին, թէ նա թիւրք լազ էր, թէ գեավուրն այդքան քաջութիւն չէ կարող ունենալ։ Թորոսը «քաջի» մասին արած այդ պատմութիւնները մէկ անկիւնից լսում էր լուռ ու մունջ...

Այդ ժամանակ Սեբաստիայի, Գաղատիայի և Հալէպի նահանգներում երեւան էր եկել մի աւշար աւազակ. նրա անունն էր Չէլլօ։ Զարմանալի քաջագործութիւններ էին պատմում նրա մասին։ Իր երկու ընկերների հետ միասին նա զբաղեցնում էր ամբողջ Սեբաս-

տիայի, Կեսարիայի, Հալէպի և. սրանց գաւառների ոստիկան զինւորներին։ Սրանցից շատերը սպանվել էին, շատերը վերք ստացել, այնպէս որ ոչ ոք չէր համարձակվում Չէլլօյի վրայ յարձակվել և նրա անունը լսելիս՝ ոստիկանները դողում էին ու երկիւղից ցրվում։ Կեսարիայի հարիւրապետը երկու վէրք էր ստացել իր ազդրից, իսկ մի դէպքում մի ոստիկան զինւոր վախից վայր էր գցել իր զէնքը և իր ընկերների հետ միասին շփոթված խոյս էին տվել դէպի գիւղերը և այդտեղ կողոպտել գիւղացիներին։ Չէլլօն կուշտ-կուշտ ծիծաղում էր նրանց վրայ և արհամարհում թիւրք կառավարութեան սինլքոր պաշտօնեաներին։ Նա միևնոյն ժամանակ երբէք չէր վնասում աղքատ դասակարգին եւ ընդհակառակը, շատ անգամ օգնում էր նրան կամ դրրամով և կամ հարուստներից առած կողոպուտով։

Թորոսը, որ ականատես էր եղել գիւղացիների քաշած տառապանքներին, անգիտակցաբար զգում էր մէկ ինչ որ յեղաշրջում իր մէջ։ Չէլլօյի համբաւը, նրա քաջագործութիւնները զարմացրել էին նաև Թորոսին. մանաւանդ այդ աւշար աւազակի բարեգործութիւնները և նրա կառավարութեան դէմ ունեցած սաստիկ ատելութիւնը զարթեցրել էին Թորոսի մէջ մի վրէժխնդրութեան ոգի. Նա ուխտել էր կռւել և յաւիտեան կռւել։

***

Գաղատիայի երկաթուղին դեռ չէր լրացել այդ ժամանակ, ամբողջ Պօլիսը իր արմտիքները և բերքերը տանում էր Մարզւանի վրայով դէպի Սամսօն։ Թորոսն ունէր բաւական քանակութեամբ ցորեն եւ գարի և նրանց փոխադրութեան միջոցին հանդիպել էր

նաեւ Մարզուան և լսել մի գաղտնի ընկերութեան մասին։ Նա ունէր մի ծանօթ բարեկամ, Մուրատ անունով, որին դիմելով, յայտնել էր իր ցանկութիւնը՝ անդամակցել այդ ընկերութեան։ Բայց մերժում էր ստացել. նա քանիցս շարունակել էր իր դիմումները և ամեն անգամ բացասական պատասխան էր ընդունել։ Մէկ օր ինքնաբերաբար նա գնել էր Գաղատիայից 1000 փամփուշտ, մի քանի րէվօլվէր և ութ օրւայ ճանապարհը կտրելով մի քանի օրւայ մէջ, անվտանգ հասել էր Մարզուան և առանց որ և է շահ ակնկալելու, այդ գործիքները տեղի անծանօթ ընկերութեան ցանկացել էր յանձնել։ Այդ ժամանակ Գափու-գաեայի անտառների հերոսը, — յայտնի Մինասը, իր խմբով արդէն երեւան էր եկել և նա կատարել էր զարմանալի քաջագործութիւններ, սպանելով Լօղման և Քիւչիկ Հասան երկու նշանաւոր և կառավարութիւնից պաշտօն ստացած լազ աւազակներին և գիւրջի Մէվլուդ չաւուշ ոստիկանին, որով մեծ սարսափ էր գցել կառավարական և ոստիկան զինւորների շրջանակում։ Մինասն ասպատակում էր աջ ու ձախ, ամեն տեղ բաց էր գտնում ասպարէզն իր առջեւ։ Ոստիկանները նրա անունը լսելիս „Ալլահ Էքպէր" (մեծ է Աստուած) ասելով, սարսափահար խոյս էին տալիս։ Թորոսը հետաքրքրութեամբ լսում էր այդ բոլորը և բարի նախանձը բոյն էր դնում նրա սրտում։ Եւ նա աղաչում էր Մուրատին, պաղատում էր, որ ընկերութիւնն ընդունէ և միջոց տայ նրան գործելու։ Մուրատը, տեսնելով նրա հաստատ որոշումը եւ անընկճելի ոգին, ծանօթացրեց նրան գաղտնի ընկերութեան, այն է՝ Հնչակեան կուսակցութեան տեղային վարչութեան հետ, որն ամենայն ուրախութեամբ ընդունելով նրա ա

ռաջարկը, թերթերի ցրւիչի և քարոզչի պաշտօնով ղրկեց Նրան Պօզոխի Հայաբնակ գիւղերը, դրանով Նախ ուզենալով փորձել երիտասարդին։ Հէնց առաջին քայլին Նրա առջեւ բացվեցաւ արիւնոտ ճանապարհ. մի խումբ քրդական աւազակ պատահել էր Նրան ճանապարհին եւ ուզել էր կողոպտել։ Բայց Թորոսը մի գնդակով վայր գլորելով Նրանցից մէկին, քիւրդերը գնտակների տեղատարափէն շփոթված խոյս են տալիս դէպի Ա գ - Դ ա ղ ի անտառուտ լեռները, թողնելով իրանց սպանված ընկերի դիակը։ Իրան յանձնված պաշտօնն ամենայն աջողութեամբ կատարելով մէկ ամսւայ 'ընթացքում, Թորոսն անվտանգ վերադառնում է Մարզուան։ Տեղային վարչութիւնը գնահատելով Նրա գործունէութեան առաջին փորձը, տալիս է Նրան մի հրացան, բաւականաչափ փամփուշտ „Հնչակ“-ներ և Հնչ. կուսակցութեան հրատարակած բրօշիւրներ։ Այդ պաշարովՆա մտնում է ուղղակի ժողովրդի մէջ. եռանդուն կերպով սկսում է քարոզել, խմբակներ կազմել եւ այլն։ Բայց իր անվախ և բացարձակ գործունէութիւնը երկար տեւողութիւն չունեցաւ։ Կառավարութիւնը շուտով նկատեց Թորոսին եւ սկսաւ քայլ առ քայլ հետեւել Նրան։

Պօզոխն այդ ժամանակ ապաստանարան էր դարձել շատ յեղափոխական փախստականների։ Թալասցի հանգուցեալ Ա ր ա պ  Օ ղ լ ո ւ  Ս ա ր գ ի ս ը, Փ ա ն ո ս ը եւ Կ ի ւ լ պ է ն կ ը ծպտեալ պտտում էին այդ կողմերի գիւղերում։ Թորոսի յանկարծական երեւան գալը հետաքրքրել էր Նրանց. լսում էին Նրա անվեհեր գործունէութեան մասին եւ զարմանում։ Կիւլպէնկի արիւնը մանաւանդ եռ ու եփ էր գալիս, ուզում էր անպատճառ միանալ Նրա հետ, որ եւ աջողում է։

***

Պատմելով Ծառուկեանի գործունէութիւնը, մենք միաժամանակ պէտք է համառօտ կերպով առաջ բերենք այն անձերի կենսագրութիւնները, որոնք միշտ գործել են Թորոսի հետ, օգնել նրան ամենավտանգաւոր հանգամանքներում եւ միեւնոյն հերոսական կերպով խեղդըվել սուլթանի կառավարութեան կախաղանի թոկով։

Թորոսի հետ ուղղակի գործ է ունեցել Կիւլպէնկ Բարսեղեանը (կամ Համալեան)։ Կիւլպէնկը ծնվել է 1873 ին, Կեսարիայից մի ժամ հեռի Թալաս գիւղում։ Նա տեղային դպրոցում նախնական կէս կրթութիւն առնելուց յետոյ, մտել էր մի հիւսնի մօտ եւ բաւական ժամանակ աշխատելուց եւ քիչ շատ արհեստը ձեռք բերելուց վերջ, առհասարակ թալասցիների սովորութեան համեմատ, դիմել էր պանդխտութեան Կ. Պօլիս։ Մի քանի տարի այդտեղ մնալուց յետոյ, մէկ ինչ-որ անորոշ յանցանքով, որը վերագրել էին իրան անտեղի կերպով, փախել էր Կ. Պօլսից եւ Պօզօխի գիւղերում ծպտեալ աշխատում էր երկաթագործութեամբ։ Գիւղական ժողովրդի լուռ շարժումները, իր շուրջ կատարված տարօրինակ փոփոխութիւնները, մարդիկների գաղտնի շշուկները, ակնարկները հետաքրքրել էին նրան։ Ցպաւորվող եւ ընդունակ պատանի, նա երբեք չէր կարող անտարբեր մնալ դէպի այդ տարօրինակ երեւոյթները. լուռ ու մունջ հետեւում էր գիւղացի ռամկի քայլերին. Նրա տնտեսական քայքայված վիճակն արդէն գրաւել էր իր ուշադրութիւնն. անխիղճ պաշտօնեաների անբարոյական ու անտանելի վարմունքը, կոշտ ու կոպիտ ոստիկան-զինուորների հազար ու մէկ անիրաւ պահանջները, բոլորը խորա-

պէս ազդել էր նրա վրայ։ Այդ ժամանակ նա դեռ պատանի էր. կարճահասակ, լայներես, կարմրայտ, հաստաշուրթ, մկանուտ ու լեցուն էր և իր ծնօտների վրայ, դեռ հազիւ էին բուսել պատանեկութեան չէկ աղուամազերը։ Նա լսել էր իր մանկական հասակում շատ ու շատ բաներ, բայց հիմա ամեն ինչ արդէն իրական կերպով պատկերանում էր իր աչքի առջեւ։ Այդ բոլորն այդ կիսակիրթ ու բիրտ արհեստաւորի զգացման թելերն այն աստիճան լարել էին, որ նա ինքնաբերաբար մղվում՝ էր հերոսների աշխարհը, նախագծեր էր շինում, ծայրայեղ երեւոյթների միջով տարուբերվում էր։ Ահա այդ հոգեկան անորոշ դրութեան մէջ վրայ հասաւ Թորոսը։ Նիւլպէնկն իր երազների հերոսն իրականապէս տեսնելով իր առաջ, անկեղծօրէն աղաչեց նրան, որ ինքն եւս իբրեւ ընկեր ընդունվէ։ Թորոսն այդ՝ իր նման կարճ ու լեցուն նորահաս պատանիի մէջ տեսաւ բաւական տոկունութիւն, անվեհեր ոգի, դարձրեց նրան իրան ընկեր, նրա համար գնեց մի ձի, տվեց մի ձեռք լաղի զգեստ և ուրիշ ինչ որ պէտք էր ապստամբի համար։

* * *

Մէկ օր երկու ձիաւոր, կտրիճ տեսքով, ոտքից մինչեւ գլուխ զինված, երեւեցան Կեսարիայի ս. Կարապետ վանքի զառիվերում։

Վարդավառի տօնն էր։ Այդ օրը շրջակայ գիւղերի բոլոր բնակիչները թափվել էին վանքը։ Վեղարաւորների երեսը խնդում էր։ Բազմութիւնը խմբերի բաժանված՝ նստոտել էր այս ու այն ընկուզենիի շուաքի տակ։ Ցուլիսի անտանելի ու հեղձուցիչ օդը ճնշում էր։

Ըեշտակի զառիվերի հրաբխային միապաղաղ լաւայից առաջ եկած փոշին խփում էր մեր ձիաւորների երեսին։ Մ ա ն ջ ը ս ը ն ի խոր ձորից մինչեւ վանքն առաջանալիս՝ նրա՛նք ներկվել էին սպիտակ գոյնով. փոշին հատիկները ներկել էին նրանց և անծանօթ կերպարանք տվել։ Քիչ վերջ նրանք արդէն բոլորովին մօտեցան ընդարձակ պարտէզի պարսպին։ Մօտ տեղից լսվում էր արեւելեան մանիների, շարքիների (խաղեր) տխուր կլկլոցը։ Ուխտաւորների խմբակներում երեւում էին վեղարաւորների ցից սրածայր գլխարկները. այս պատուաւոր գլխարկների պատուաւոր տէրերը, գինու շոգիից տաքացած, վաւաշոտ ակնարկներ էին գցում այս ու այն օրիորդի վրայ։ Վանքի այդ որջացեալ աւազակների տօնն էր այդ օրը. նրանք շողոքորթում էին, կատակներ էին անում և կողոպտում ժողովրդին։ Երկու զինված ձիաւորների երեւալը էլեկտրական հոսանքի նման իսկոյն տարածվեցաւ խմբակների մէջ։ Կառավարութեան ղրկած պահապան ոստիկան-զինուորներն՝ իրանց հրացաններն առած՝ դուրս նետվեցան վանքի Խ ա ս-Բ ա ղ չ ա յ ի դռնից եւ տեսնելով երկու խրոխտ լազ երիտասարդներին, անմիջապէս հասկացան, թէ որի հետ գործ ունեն։ Ծրարեցին իրանց պարծենկոտ լեզուն եւ դիմելով տաճկական խորամանկութեան, նրանցից մէկը վազեց ձիաւորներին դիմաւորելու, միւսը ձիերը բռնելու... եւ սկսան ման ածել ձիերին նրանց քրտինքը չորացնելու համար, ոմանք թօթվում էին նրանց վրայի փոշին, իսկ մի քանիսները Խ ա ս-Բ ա ղ չ ա յ ի շատրուանի շուրջը պատրաստում էին հեծեալների համար օթեակներ և մի քանիններն էլ „բույուրըն“ (համեցէք) ասելով, առաջնորդում էին նրանց։

Բազմութիւնը մի ժամանակ մոռանալով իր ուրա-

[illegible]ութիւնը, շրջապատել էր երկու գեղահասակ երիտասարդներին, սքանչանում էր նրանց բաշլըղներին, նրանց զըբըղայի (նեղ շալվար) վրայ և զարմանում, թէ ի՛նչ համարձակութեամբ նրանք վերցրել էին մարթին և ինչպէ՞ս էին զարդարել իրանց՝ կրծքերը փայլուն չափրաստ ֆշեկլիկներով... Մի քանիսի սիրտը տրոփում, տրորվում էր, թէ ահա չավուշը իսկոյն նրանց կը ձերբակալէ և կապկպելով կը տանէ կենտրոնական բանտը։ Վեղարաւորների երեսի գոյնը նետել էր. նրանք, այդ օտարակերները, մէկ-մէկ խոյս էին տըվել իրանց որջը և նրա նեղ պատուհանից հետաքրքիր կերպով դիտում էին երկու երիտասարդների ամեն-մի շարժումը։

Անատոլուի ո՛չ մի քաղաքում տաճիկ տարրն այնքան մոլեռանդ, այնքան հայատեաց և այնքան արիւնարբու չէ, որքան Կեսարիայի և իր շրջականների թիւրք ժողովուրդը։ Նա ունի իր պատմական անցեալը, որը մեծ անպատւութիւն է բերում տաճիկ կառավարութեան արդէն անպատիւ անցեալին։ Իր ներկան աւելի վատ է. նա դեռ չէ թողել իր հին ենիչէրիական բարբարոսութիւնները։ Նա հետեւում է հայի—«գեավուրէռ»—քայլերին, մանաւանդ տօնի օրերում և միշտ աշխատում է պղտորել նրա վայրկենական ուրախութիւնն անգամ։ Նա ուտում է հայի սեղանից, խմում է հայի գինին և յետոյ անարգում, հայհոյում է նոյն հայերին և շատ անգամ անպատւում իսկ հայ կինը։ Երբէք չէ եղել, որ վանքի ուխտագնացութեան օրերում հայերն առանց մի քանի տաճիկ սրիկաների սեղան նստէ։ Այդ ուրախութեան օրը միաժամանակ սարսափի և արիւնահեղութեան օր է դառնում։ Ջըրլավուգի (տա-

ճիկ գիւղ, որի բոլոր բնակիչներն աւազակներ են) Մ ա ն ջ ը ս ը ն ի, Կ է ր մ ի ր ի, Թ ա լ ա ս ի Թիւրք խուժանը, միացած քաղաքի բարբարոս երիտասարդների հետ, շատ անգամ յարձակվում է ուխտաւորների վրայ, ջարդում, փշրում սեղանները, թալանում ուտելիք ու խմելիքները, գլուխներ պատառում և հայ հարսների ու օրիորդների վզից քարշ արած ոսկիների շարոցները բռնի յափշտակելով, հեռանում։ Կառավարութիւնը երբէք չէ հետաքրքրվել այդ անկարգութեամբ. և չէ էլ պատժել Թիւրք սրիկաների բարբարոսութիւնները. իբր թէ դրանք շատ բնական և կանխամտածված բան լինէին և անհրաժեշտաբար կատարվէին։

1892 թ. վարդավառը չունեցաւ այդ սովորական դժբաղդութիւնը. երկու երիտասարդների թողած ազդեցութիւնն ու սարսափն այնքան մեծ էր, որ զսպել էր տաճիկ երիտասարդների վայրագութիւնը, որոնք քաջ են միմիայն իրանց շրջանակում... իսկ դրսերը նապաստակի պէս երկչոտ։ Եւ այս անգամ նրանք ուրուականների նման երբեմն-երբեմն վեր էին բարձրացնում իրանց գլուխները Խաս-Բաղչայի պարսպից և դիտում երկու փայլուն կտրիճներին։

Մի քանի ժամից յետոյ Թորոսն ու Կիւլպէնկը մըտան վանքը, բաց անել տվին ս. Կարապետի նշխարները պարունակող մատուռը և դնելով իրանց զէնքերը գերեզմանի վրայ, երկուսն էլ երդվեցան մեռնել հայ ռամիկ ժողովրդի դատի համար։ Իրիկնադէմին նրանք մեկնեցան Տ է ր է վ է ն ք, ուր ծանօթացան և տեսնվեցան Դանիէլ վարդապետի հետ։

* * *

Լուսադէմին երկու ձիաւորները սրնթաց գնում էին Պալասի (Բալասի) դաշտով։ Կեսարիայի ոստիկան զինւորներն արդէն ցրվել էին գիւղերում և փնտռում էին «Նոր Չէլլօին»։ Սեբաստիայից Խուսրէվ փաշան (Նախկին չէրքէզ աւազակ), իր հետ ունենալով կիւրինցի Մէհմէտ բէկ անուն անպատիւ երիտասարդին, 72 զինված ձիաւորներով ճամբայ էին ընկել «Նոր Չէլլօին» հալածելու, որը հին առասպելական դեւերի նման, մէկ օրւայ մէջ երեւան էր գալիս մի տեղ, մէկ էլ 10-20 ժամ հեռաւորութեամբ մէկ ուրիշ տեղ։ Գաւառների ոստիկան զինւորները, անմաքուր տանտիկիններին նման, մերթ այստեղ էին վազում, մերթ այնտեղ և միշտ լոյս էին տալիս այն գիւղից, ուր «Նոր Չէլլօյի» հոտն էին առնում։

Կեմերեկից երեք ժամ հեռու Գարա-Գէօլ հայաբնակ գիւղի հարաւային կողմի բլրակի վրայ արեւիճառագայթները փայլեցնում էին երկու ձիաւորի զրահները։ Նրանցից մէկը հեռադիտակը ձեռքին՝ դիտում էր ձիաւորների մէկ անկարգ բազմութիւն, որ արագաքայլ գալիս էր։ Դա Խուսրէվ փաշան էր իր զօրքով, որ հեռուից շտապում էր դէպի երկու հերոսները։ Կէս ժամ հեռաւորութիւնից արդէն սկսվել էր փոխադարձ հրացանաձգութիւնը. գնդակները վժվժում էին..... Բայց հազիւ կէս ժամ անցած, տաճիկ խառնիճաղանճն արդէն սկսել էր տեղի տալ և փախչել դէպի Գարա-Գէօլ, երբ Թորոսն իր ընկերի հետ, դիմեց դէպի մի մօտակայ գիւղ։ Այնտեղ հաւաքելով գիւղացիներին իր շուրջը, Թորոսը սկսաւ քարոզել նրանց, ներկայացնել նրանց աչքին ի-

րանց տնտեսական բոլորովին քայքայված ու սնանկ վիճակը, դրա պատճառները, կառավարութեան խայտառակ ձեռնարկութիւնները, նրա պաշտօնեաների հրէշային գործերը ևն, ևն։ Նա խօսում էր ոգեւորված կերպով, պարզ գիւղական լեզուով և շարունակ շեշտում էր մօտ ապագայում սպառնացող ժողովրդական սնանկութիւնը։ Գիւղացին, դարերի այդ թմրած ստրուկը, ընդունում էր նրա ամէն-մի խօսքը չորացած երկրի նման, որ անյագաբար ծծում է անձրեւի կաթիլները...

Ամէն գիւղ ընդունում էր նրանց իբրեւ իր ազատիչներին։ Ցածիկ գիւղացին անգամ հետքրքրվում էր նրանցով, հիւրասիրում էր, ականջ էր դնում նրանց համարձակ խօսքերը և բաց անելով իր աչքը, նա տեսնում էր այն ահաւոր անդունդը, որ կառավարութիւնը, միանալով դրամատէր վաշխառուների հետ, փորել էր նրա, այսինքն՝ ժողովրդի առաջ։ Անկումը մօտ էր եւ այդ սոսկալի վայրկենին անդնդի ու ռամիկի մէջտեղ յանկարծ կանգնած է երեւում մի նորահաս երիտասարդ, որ ցոյց է տալիս այդ մօտալուտ անկումը և նախազգուշացնում նրանց։ Եւ թիւրք գիւղացիներն իսկ անիծում էին սուլթանին եւ նրա աւազակ պաշտօնեաներին, "Մէհտի" (Մեսսիա) անուանում Թորոսին եւ պաշտում նրան։

Կառավարութեան զայրոյթն իր սահմանից անցել էր. Նա զգացել էր, թէ իր դիմաց կանգնած էր ոչ թէ աւշար, գող ու աւազակ մի Չէլլօ, այլ ժողովրդի արդար պահանջների ու բողոքների մարմնացումը եղող մէկ անձ, որ դուրս եկած նոյն այդ՝ ժողովրդի ծոցից, միշտ հարուածում էր կառավարութեան պաշտօնեաներին, սպանում էր նրանց և ժողովրդին գրգռում բռնութեան

դէմ։ Եւ կառավարութիւնն իր ամբողջ զօրութիւնը հաւաքելով, հալածում էր նրան, բայց միշտ յաղթվում։ Ամբողջ ամիս ու կէս շարունակվեց այդ փոխադարձ կռիւը։ Այդ ժամանակամիջոցում Թորոսն իր ընկերների հետ ենթարկվեցաւ անտանելի նեղութիւնների. նա շատ անգամ ստիպված էր օրը 40—50 ժամւայ անընդհատ ճամբայ երթալ և մէկ անգամ հինգ օր նա մնաց անօթի։ Պատճառն այն է, որ մի բլրակի վրայ գտնվելով, նա շրջապատված էր ամեն կողմից։ Բայց պէտք էր ելք գտնել և գտաւ։ Իր վերջին որոշումը եղաւ գիշերանց ճեղքել թշնամիներին. ինչ էլ կատարեց։ Առանց նկատվելու նա անցաւ և դիմեց դէպի Ագ-Դաղի անտառները։ Իսկ նրա տգէտ թշնամիները կարծեցին, թէ նա համբարձել է։ Շատ դէպքերում նրա անկատար հրացանը քիչ էր մնում, որ մատնէր իր տիրոջ. այդպիսի պարագաներում նա գործ էր ածում իր Գարատաղ րէվօլվէրը։ Իր այդ երկրորդ շրջանն էլ կատարելով ամենամեծ աջողութեամբ, նա վերադարձաւ Մարզուան։ Կիւլպէնկը միշտ իր հետն էր։

***

Մարզուանում, որպէս ամեն կողմ, արդէն լսվել էր իր համբաւը։ Նրան վերագրում էին առասպելական քաջագործութիւններ, որ իր երազում անգամ չէր տեսել Թորոսը։ Նրան ընդունեցին ամենամեծ սիրով։ Նա տվեց իր գործունէութեան և գիւղացիների տրամադրութեան մասին տեղեկութիւններ և զեկուցումներ։ Տեղային Հընչակեան Վարչութիւնը, գնահատելով նրա գործունէութիւնն, իրան տվեց պաշտօնական վկայագիր և տաճկա-

կան բէյլիկ-մարթին հրացան և մեծ քանակութեամբ ռազմամթերք։ Այդ ժամանակ Մարզուանի բանտից փախուստ էր տվել Մխիթար Տէր Նշանեանը, իր հետ տանելով Չաւուշի հրացանն ու պաշտօնական սուրը, և նա ապրում էր քաղաքում ծպտեալ կերպով, իրան ընկեր ունենալով Ջէնկիւճեան Միհրանը։ Ինչպէս յայտնի է, այդ երկուսն էլ Մարզուանի 8 Սեպտեմբերի 1893 թ. հերոս-նահատակներն են։ Այդ երկուսին միացան Թորոսը և Կիւլպէնկը։ Կարճ ժամանակից յետոյ այդ չորս հերոսներն էլ մի ցոյց անելով Օսմանջըգի ճամբայի վրայ, զատվեցան իրարից։ Թորոսն իր ընկերով անցաւ դէպի Զորում, սպանելով Զէջբէլիի դէրբէնդի (անցքի) ոստիկանին, որը կողոպտում էր անցորդներին։ Զորումից մի վաշտ զինուոր միանալով բաշը-բօզուգների հետ, հետեւեցին նրանց։ Սունգուրլուի մօտ նրանք ունեցան մեծ կռիւ. երկու զինուոր և մէկ բաշը-բօզուգ լաղ սպանվեցան։ 48 ժամ ճանապարհորդելուց յետոյ Կիւլպէնկի ձին անկարող եղաւ շարունակելու ճամբան։ Դա մեծ դժբաղդութիւն եղաւ իրանց համար, որովհետեւ նրանք ստիպվեցան թողնել մեծ քանակութեամբ փամփուշտ և իրանց զգեստեղէնի մի մասը և սպասելով գիշերի խաւարին, դիմեցին Խօզղատ։ Բայց նրանք չէին կարող հանգիստ և անգործ մնալ և ոչ մի տեղ. նոր հոսանքը մղում էր նրանց և իրանց համար պարտաւորութիւն էին զգում աւելի եւ աւելի տարածել նրան, այդ նոր հոսանքը։

Նոյն 1892 թ. օգոստոսի վերջերը նրանք ճանապարհ ընկան դէպի Մատէն, ճամբային կուփ բըռնըվելով, սպաննեցին երկու ոստիկան զինուորի ու անցան Գըզըլ-Ըրմագի հարաւային գիւղերը։ Այդտեղ եր-

կու ընկերները հրաժեշտ տուին միմեանց՝ գարնան անպատճառ կրկին միանալու խոստումով... Շատ դառն եղաւ նրանց բաժանումը. արտասվում էին, համբուրվում էին, իրար գրկում անդադար։ Այնպէս էր կապված նրանց սրտերը, որ անհնար էր թւում հեռանալ միմեանցից։ Մէկ անորոշ նախազգացում տանջում էր երկուսին էլ. կարծես նրանց առաջ պատկերանում էր ապագան, պատկերանում էր սուլթանն իր անարգ կախաղանով՝ որի վրայ նրանք միանգամ եւս և ընդմիշտ պիտի միանային... Նրանք տեսնում էին իրանց անշնչացած մարմինները կախ ընկած բռնութեան ստեղծած “անարգ սիւնից„ և խուժանը, որ ահ ու սարսափով դիտում էր նրանց, գիւղացին, որ ողբում էր իր սիրելիների մահը և այդ արտասուքները խեղդում էր իր մէջ. բռնութիւնը պատժում էր արտասվողներին....

Այդ տենդային դրութեան մէջ նրանց արտասուքների ազդեցութիւնից կարմրած աչքերը հանդիպեցին իրար. մէկ ինչ-որ հոգեկան դրութիւնից առաջացած սարսուռ ցնցեց նրանց մարմինները... Վերջապէս նրանք բաժանվեցան և այդ բաժանումն առաջնորդեց նրանց դէպի կախաղան.....

Նրանց գործունէութիւնը ոգեւորել էր գիւղացի և քաղաքացի հայ ժողովրդներին և սկսել էր նրանցից դուրս բերել նոր հերոսներ։ Միհրիճան Խանապախեանը և Փանոս Եաղուպեանն այդ հերոսներից էին։ Առաջինը մի կարճ, փոքրիկ եւ վայելչակազմ երիտասարդ էր. նրա խոհուն աչքերը և քաղցր խօսակցութիւնը գրաւում էին իր ընկերներին. իր սուր մտքով, բնական ճարպիկութեամբ նա նախատեսում էր ամենափոքրիկ վտանգն անգամ և խոյս

տալիս։ Գիտէր օգտվել և հանգամանքներից. բնութիւնը նրան ստեղծել էր վազելու և սուր շարժելու համար։ Փանոս Եաղուպեանը ներկայացնում էր հսկայ ույժ, հսկայ իրան, խոշոր աչքեր և խոժոռ դէմք։ Նա Խանապախեանի հակապատկերն էր։ Թ ա ւ լ ո ւ ս ո ւ ն գիւղում կատարված մի սպանութեան համար ամբաստանված լինելով, ստիպվել էր խոյս տալ։ Երկու տարի նա ապրում էր փախստական կեանքով։ Մենք մի ժամանակ տեսանք նրան Պօզօխի գիւղերում։ Թորոսի երեւան գալուց ի վեր, նա վերադարձել էր Թալաս և Խանապախեանի ընկերակցութեամբ քաղաքում էին գործում։ Նրանք պատրաստում էին բնակարան, ուտելիք, ռազմամթերք Թորոսի և նրա ընկերի համար. հսկում էին և փախստի ճամբաներ պատրաստելով, առաջնորդում էին նրանց։ Նրանք, այդ վառվռուն երիտասարդները, խոստանում էին ապագայում մեծ գործեր տեսնել, բայց անարգ մատնութիւնը շուտ վրայ հասաւ. վատութիւնը դաւաճանեց նրանց.....

Մենք չարձանագրեցինք դեռ Թորոսի բոլոր քաջագործութիւնները։ Հանգամանքները դեռ եւս չեն ներում այդ բոլորը երեւան հանել։ Ապագայում, անշուշտ, կը լրացվէ այդ պակասը։

***

Թորոսը նշանված էր։ Նա իր ծննդավայրը դառնալուց մէկ ամիս վերջ ամուսնացաւ օր. Էլմաս Ծառուկեանի հետ։ Այդ ամուսնութիւնը եղաւ նրա առաջին սխալը։ Ասպատակային կեանքը նրանում առաջացրել էր ծայրայեղ յանձնապաստանութիւն. Նա արհա-

*մարհում էր ամեն ինչ. պաշտօնեաները երբէք նշանակութիւն չունէին նրա առջեւ. Նրանց վրայ նայում էր իբրեւ գետնաքարշ սողունների վրայ։*

*Կիւրինի ձմեռը խիստ սաստիկ էր այդ տարի. Նա յիշեցնում էր ծերերին նախկին ձմեռները, երբ կանգուններով բարդված ձիւնն արգելում էր դրացիական յարաբերութիւնները։ Հիւսիսի բուռն քամին մօտակայ բարձր բլրակների ձիւնը քուլաներով գզգզում, թափում և ահագին հիւսեր էր կազմում այդ խոր ձորամէջ քաղաքում։ Ամբողջ երկար երեք ամիսներ էին անցել. ոչ ոք չէր կասկածում թէ Կեսարիայի, Սեբաստիայի և Եօզղատի գաւառների շրջակայքում շահատակութիւններով կառավարութիւնը զբաղեցնող անձն իր տանը լինէր։ Այդ ձմեռ երեւան եկաւ եւ յայտնի "յայտարարութիւնների" խնդիրը։ Սարսափած կառավարութիւնը բանտարկում էր ամենքին. ոստիկան-զինւորները տաճիկ գիւղերում կրօնական պատերազմ էին քարոզում և գրգռում տաճիկ տարրին գեավուրների դէմ։ Կիւրինի շրջակայ վաճառականները քշվել էին գիւղերից. Նրանցից երկուսը զոհվել էին մոլեռանդ խուժանի կրքին։ Շ ի ր վ ա ն Ղ ա զ ա ր ը Պօզոխի գիւղերում կողոպտվել էր և այնքան գանակոծվել, որ մի քանի օր վերջ մեռել էր ցաւից։ Իսկ Հ ա լ ա ճ-Թ ո ր ո ս ե ա ն Յ ա կ ո բ քաջ երիտասարդը չարաչար խեղդել էին Ս ա ր ը-Ղ ը շ լ ա յ ի և Ո ւ չ ո ւ խ գիւղի մէջտեղում, և մարմինն անհետացրել։ Ոճրագործները, տեղային գ ա տ ը ի տղան եւ իր ընկերները, համարձակ պտտում էին։ Յակոբի եղբայրների դիմումները միշտ անլսելի էին մնում։ Բընութիւնը եւ բռնութիւնը ձեռք ձեռքի տված կտրել էին գեավուր ճանապարհորդների անցքը։ Երեւան էին*

եկել եւ մատնիչներ։ Դրանց շնորհով Գ ե տ ի կ-Օ վ ա ս ի Հայ գիւղերի բնակիչներով լցվել էին բանտերը։ Պետական աւազակները կողոպտում էին նրանց։ Գիւղացիների ընտանեկան յարկը, նրանց հարսներն ու օրիորդները մատնված էին Թիւրք պաշտօնեաների վայրենի կիրքերին։ Է Ջ մ ա Լ Օ Ղ Լ Ի  Հ ա մ բ ա ր ը, Կէմէրէկի մ ի ւ տ ի ր ը, մատնել էր Ծառուկեանին և Կիւլպէնկին։ Այս վերջինն արդէն բաւական ժամանակից ի վեր Կեսարիայի բանտում շղթաների տակ էր։ Ամեն կողմից լուրեր էին հասնում Թորոսին՝ հեռանալու ծննդավայրից, բայց մի կողմից կատաղի, անխիղճ բնութիւնն արգելք էր հանդիսանում նրան, միւս կողմից նրա անխոհեմութիւնը ծայրայեղութեան էր հասել։ Վերջապէս նա զոհ գնաց. . . .

* * *

1893 փետրվարի 17-ին Կիւրինի շուկայում ձերբակալվեցաւ Թորոսը. անմիջապէս շղթայեցին նրա ոտքերը։ Գրեթէ 19 օրի չափ տեղային բանտում մնալուց յետոյ փոխադրվեցաւ Սեբաստիա։ Այնտեղ միջին դարերի ծանր տանջանքների տակ շատ չարչարեցին նրան։ Նա յայտնեց իր արած գործերը։ Նրան փոխադրեցին Գաղատիա, ուր ստացաւ իր վերջին ծանր վճիռը. . .

Թորոսը միշտ նախատեսնում էր այդ և յաճախ մարգարէաբար յայտնում էր իր ողբերգական մահը։ Կախաղանի տակ էլ նա մնաց նոյնը, ինչպէս էր միշտ. հըպարտ, շիտակ և անընկճելի։ Նա մտածում էր միմիայն իր գիւղացիների, ռամիկ ժողովրդի քայքայված դրութեան և հայրենիքի մասին։ Այդ նպատակով նա մտաւ գործի

*ասպարէզը և այդ սուրբ աղաղակով “կեցցէ՛ Հայաստան, կեցցէ՛ Յեղափոխութիւն„՝ խեղդվեցաւ նա կախաղանի թոկով... Նոյնպէս կախաղանի տակ նրա վսեմ աղաղակի խորհրդաւոր արձագանքը տուին իր միւս քաջ և անձնուէրաց ընկերները... Բռնակալութիւնը լսեց այն և սարսեցաւ. — այդ վերջին աղաղակում, որ կարծես գերեզմանից էր ելնում, նա տեսնում էր իր մօտալուտ անկումը։*

---

# ԿԱԽԱՂԱՆԻ ՑԱԿԻՑ

## ԹՈՐՈՍ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ ՎԵՐՋԻՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ

### I

Գաղատիա. Թանտ. 16 յուլ. 1893.

Սիրելի ընկեր,

Կասկածս կիրականանայ. բանտապահներէն մէկը, որ բան մը չը պահեր ինձմէ, այս կէսօրին ըսաւ ինձ թէ գիշերը սաստիկ հրամաններ հասած են Պոլիսէն, թէ ատոնց համեմատ պէտք է մէկ քանիներ կախուին եւ մնացեալները աքսորուին հեռաւոր տեղեր։ Կը յիշես, որ նախորդներովս գրած էի թէ՝ քանի քանի անգամներ Պոլիսէն հինգիս նկատմամբ մասնաւոր հարցումներ ուղղած էին Ապէտին փաշայի. ինձ համար յայտնի էր այս վախճանը։ Հիմա, սիրելիս, ահա կեանքիս վերջին ժամերը կը մօտենան. քեզ կը վստահացունեմ, որ պաղարիւն կերպով կը դիտեմ այս վախճանը. սա զարմանալի չէ, արդէն հաշուի մէջ էր ինձ եւ ընկերներուս համար։ Բայց ես աւելի կուզէի գործելու փառքը ժառանգել. քիչ գործեցի, ահա միակ ցաւս. ժողովրդին ծառայելու ջերմ փափագներս ուզածիս պէս չի կշտացան։ Ցաւս թող մարի շունչիս հետ, փափագներս կը կտակեմ ընկերներուս։ Ներկային վրայ չեմ՝ խորհիր։ Վերջին ակնարկով մը անցեալը կը տեսնեմ առջեւս պատկերացած, լեռները, անտառները, այրերը, գիւղերը, որ այնքան ինձ մտերիմ են... Ա՜խ իմ կռիւներս... ասպատակային կեանքը, իր հաճոյքնե-

րով ու իր տագնապներով կը շարուին աչքիս առջեւ. ...Նոյնպէս կը տեսնեմ իմ բազմաթիւ սիրական հայ գիւղացիներս, որոնց օգտակար ըլլալուս համար սրտանց ուրախ եմ։ Գիտեմ, ապագային յոյսերս պիտի կատարուին անշուշտ։ Սիրելիս, կախաղանիս տակէն կարծես աւելի պարզ կը տեսնեմ մեր ցանկացած առաւօտին արշալոյսը. այն համոզումս ալ միշտ կը մնայ, որ նահատակներու արիւնով միայն հայ ժողովուրդը կրնայ ունենալ նոր բաղդաւոր կեանք մը։ Այդ կեանքին համար որքան արիւն թափուի՝ քիչ է։ Մեր ուզածները օր մը անպատճառ պիտի իրականանան. ժողովուրդը մղված իր թշուառութենէն պիտի շարժի միշտ, մինչեւ որ նոր կեանք մը ձեռք բերէ. միայն թէ անոր սրտոտ, խելացի առաջնորդներ պէտք են. այդ ալ դուք պիտի ըլլաք միշտ։ Մի մոռնաք ձեր Թորոսի այդ կտակը։

Ուրախ եմ որ միւս ընկերներս պաղարիւնութիւն կը պահեն։ Կիւլպէնկը կըսէ՝ դա՛մն իմ սիրելիս, խեղճ հայ ժողովուրդ, եթէ տասը կեանք ունենայի, տասն ալ կուտայի քեզ համար"։ Եթէ առիթ գտնեմ, կը գրեմ դարձեալ. եթէ չը գտնեմ, իմ հրաժեշտս կուտամ բոլոր սիրելիներուս։ Թող ներէ ինձ ընտանիքս, որ խաղաղ կերպով նահատակի քունը քնանամ։ Քաջալերեցէք իմ սիրական գիւղացիներս. ըսէք անոնց թէ Թորոսներ կրնան մեռնիլ ու պէտք է որ մեռնին, բայց անմահ են լուսաւոր գաղափարներ. հաւատք գոյացուցէք մեր արդար դատի յաղթանակի մասին։ Կրծքիս կը սղմեմ բոլոր պաշտելի հայ գործիչները. Թող երբէք չը թուլնան եւ միշտ բարձր պահեն յեղափոխութեան դրօշը, Հնչակեան դրօշը։ Կորուստով պիտի շահինք։

Քոյդ ԹՈՐՈՍ.

## II

### Կախվելուց մէկ օր առաջ գրված.

Սիրելի ընկերներ,

Ը՛հ ստոյգ է. ժամերով կը համրուին մեր օրերը. կօգտուիմ առիթէն, քանի որ դիակ մը պիտի դառնամ կամ այսօր կամ վաղը։ Կեանքի եւ մահուան մէջտեղը կայնած եմ. մարգարէական ոգի մը կուգայ իմ վրայ. ապագան երբեք այսչափ պարզ տեսած չունէի. հաւատքը ինձ համար իրականութիւն մը կը դառնայ այս պահուս։ Այդ հաւատքը ներշնչեցէք ժողովուրդին, նաեւ սա փրկարար համոզումը, թէ՝ ժողովուրդի համար ուզել և կրնալ նոյն բաներ են։ Զինեցէք կիներն ալ նոր գաղափարներով։ Թիւրքին մերկութիւնը, ապականութիւնը և կործանող ընթացքը ազատ համարձակ երեւան հանեցէք, ինչպէս մինչեւ հիմա. վշտացեալներ շատ կը միանան։ Հարուածներէ ու կորուստներէ մի վհատիք. այս՝ ցաւերուն սկիզբն է. դեռ աւելի մեծ հարուածներ պիտի ըլլան, իրարանցումներ, կռիւներ, արիւն. այս է ազատութեան ճամբան։ Մի բնաւ թուլնաք. փրկութեան օրը մօտ է, եթէ անօգնական չի մնան գործիչները։ Հայուն ազատութիւնը հայը պիտի գործէ. մուրալը օգուտ չունի. միշտ, պիտի խաբեն ձեզի։ Շուտ կը հասնի ցանկալի օրը։ Պէտք է շատ ոյժ տալ ապստամբներու կազմակերպութիւններուն. ատոնք հրաշքներ կրնան գործել։ Շատ գործեցէք, աղէկ գործեցէք, միասին և կանոնաւոր գործեցէք։ Թիւրք բռնակալի ապականած կառավարութիւնը միշտ առիթներ պիտի տայ ժողովուրդը

կատղեցնելու. այդ կատաղութենէն միշտ պէտք է օգտուիլ։ Սիրտ տուէք, պատրաստեցէք գիւղացիներուն.... ա՜խ իմ սիրական գիւղացիներս... Զգուշացէք ժողովուրդները իրարու դէմ գրգռելէ. մեր դատը անիրաւ, բռնակալ, աղտոտ կառավարութեան դէմ է, որ կառավարութիւն չէ, այլ՝ հրէշային մէկ ճիւաղ, որ իր հոտած գոյութիւնը պահպանելու համար իր բոլոր ժողովուրդի կեանքը կը ծծէ... Ապագան երկու թուք ունի. մին պիտի թքնէ այս անարգ կառավարութեան աղտոտ գոյութեան վրայ, միւսը պիտի թքնէ մեր ներքին և եւրոպացի թշնամիներուն երեսը. իսկ մեր թշուառ սիրելի ժողովուրդին կը մնայ փառաւոր յաղթանակը, եթէ գիտնայ առանց յուսահատելու առաջ երթալ այս արիւնալի և փշոտ ճանապարհէն։

Ինչպէս միասին՝ պաշարուին կերպով և եթէ կարելի ըլլայ՝ արհամարհանքով մահը դիմաւորելէ առաջ, կախաղանի տակէն սրտանց կը գրկենք մեր բոլոր սիրելիները, բոլոր ընկերները. մեր խոնարհ յիշատակը յարգողներուն կը կտակենք շարունակել միշտ գործը։ Մնա՛ք բարով, մնա՛ք բարով.... Ա՜խ, այդ խօսքէն կը սարսռամ... Այդքան շո՜ւտ... Ինքզինքս յուզուած կըզգամ... բայց չի պիտ պակսի իմ մէջ ոյժս և մահուան առջեւն ալ պիտի կրնամ ըսել կեցցէ՜ Նոր Հայաստան... Մնա՛ք բարով. կրկին կը սղմեմ ձեզ կրծքիս... Ա՜խ, երանի այդ իրական ըլլար... խօսքս լմնցաւ... կախաղանը ինձ կըսպասէ...

Չերդ ԹՈՐՈՍ·

Գաղատիա — Բանտ, 17 Յուլ. 1893

# ՑԱՆԿ





# ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
## ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Բրօշիւրի դիրքով.

---

1) Ծրագիր Հնչակեան կուսակցութեան (երկրորդ տպագրութիւն։ Սպառւած) . . . . . . . Ձրի.

2) Նոր Հոսանք և Բաց Նամակ Հայաստանցիներին. (սպառւած) . . . . . . . . . . . . գ. 1 Ֆրանկ.

3) Տարեդարձ 1890 Թ. Յուլիս Տասնևհինգի։ Յեղափոխական հերոսներ։ Յ. Ջանկիւլեանի, Կ. Մ. Նալպանտեանի և Յ. Ղումրուեանի պատկերներով. (սպառւած) . . . . . . . . . . . . . . . գ. 30 սանտիմ.

3 bis) Յուլիս Տասնևհինգի 1890 Թ. արիւնահեղ Ցոյցը Կ. Պօլսում և օրւան հերոսները — Ֆրանսերէն։ Յ. Ջանկիւլեանի, Յ. Ղումրուեանի և Կ. Մ. Նալպանտեանի պատկերներով (սպառւած) . . . . . . գ. 30 սանտիմ.

4) Ով ինչո՞վ է ապրում. Ս. Դիկշտէյնի թարգմանութիւն։ . . . . . . . . . . գ. 75 սանտիմ.

5) Մայիսի մէկը. Ամենամեայ համաշխարհային տօն բանւորների, Գ. Պլեխանօվի և մի գլուխ Պ. Աքսելրօդի “Բանւորական շարժում„ գրւածքից։ Թարգմանութիւն . . . . . . . . . . . . գ. 25 սանտիմ.

6) Հայերն Ամերիկայում, Ակն—եանցի և ինչ է աշխատանքի վարձ, Թարգմանութիւն Կարլ Մարքսից . . . . . . . . . . . . . . . գ. 15 սանտիմ.

7) Սահմանադրութեան էութեան մասին, Ֆերդինանդ Լասսալի, հեղինակի պատկերով և մէկ առաջաբանով “Հնչակի„ խմբագրութեան կողմից. գ. 40 սանտիմ.

8) Իրաւունք ծուլանալու, Պօլ Լաֆարգի, հեղինակի պատկերով և մէկ առաջաբանով “Հնչակի„ խմբագրութեան կողմից. . . . . . . . գ. 25 սանտիմ.

9) Garden of Eden Defiled! (Եդեմի պարտէզը կործանված) անգլիերէն . . . . . . . . . գ. 5 սանտ.

10) Բռնութեան դէմ. Գաղափարի դատավարութիւն . . . . . . . . . . . . . . . . . գ. 1 Ֆրանկ.

* * *

«Հնչակի» խմբագրութեան մէջ ծախվում է նաև Հեղ. Լեռենցի —

1) Բանաստեղծութիւններ. Ս. Պետերբուրգ, տպարան Ի. Ն. Սկորոխոդովի. . . . . . . գ. 60 կոպէկ

2) «Փախստականը», պօէմա յեղափոխական կեանքից. . . . . . . . . . . . . . . . գ. 40 սանտիմ.

3) «Աւազակը», պօէմա յեղափոխական կեանքից. . . . . . . . . . . . . . . . գ. 25 սանտիմ.

4) «Մարտում». . . . . . . . . . գ. 10 սանտիմ.

* * *

Բրօշիւրների վճարն ընդունվում է նաև նամակադրօշմով։ Ճանապարհածախսը «Հնչակի» խմբագրութեան կողմից։

ասպարէզը և այդ սուրբ աղաղակով “կեցցէ՛ Հայաստան, կեցցէ՛ Յեղափոխութիւն„՝ խեղդվեցաւ նա կախաղանի թոկով... Նոյնպէս կախաղանի տակ նրա վսեմ աղաղակի խորհրդաւոր արձագանքը տուին իր միւս քաջ և անձնուրաց ընկերները... Բռնակալութիւնը լսեց այն և սարսեցաւ. — այդ վերջին աղաղակում, որ կարծես գերեզմանից էր ելնում, նա տեսնում էր իր մօտալուտ անկումը։

# ԿԱԽԱՂԱՆԻ ՏԱԿԻՑ

## ԹՈՐՈՍ ԾԱԹՈՒԿԵԱՆԻ ՎԵՐՋԻՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ

### I

Գաղատիա. բանտ. 16 յուլ. 1893.

Սիրելի ընկեր,

Կասկածս կ'իրականանայ. բանտապահներէն մէկը, որ բան մը չը պահեր ինձմէ, այս կէսօրին ըսաւ ինձ թէ գիշերը սուլթանի հրամաններ հասած են Պոլիսէն, թէ առանց յապաղման պէտք է մէկ քանիներ կախուին եւ մնացեալներ աքսորուին հեռաւոր տեղեր։ Կը յիշես, որ նախորդներուս գրած էի թէ՝ քանի քանի անգամներ Պոլիսէն հինգիս նկատմամբ մասնաւոր հարցումներ ուղղուած էին Աղէտին փաշային. ինձ համար յայտնի էր այս վախճանը։ Հիմա, սիրելիս, ահա կեանքիս վերջին ժամերը կը մօտենան. քեզ կը վստահեցնեմ, որ պաղարիւն կերպով կը դիտեմ այս վախճանը. սա զարմանալի չէ, արդէն հաշուի մէջ էր ինձ եւ ընկերներուս համար։ Բայց ես աւելի կուզէի գործելու փորձը ժառանգել։ Քիչ գործեցի, ահա միակ ցաւս. ժողովրդին ծառայելու ջերմ փափագներս ուզածիս պէս չի կշտացան։ Ցաւս թող մարի շունչիս հետ, փափագներս կը կտակեմ ընկերներուս։ Ներկային վրայ չեմ խորհիր։ Վերջին ակնարկով մը անցեալը կը տեսնեմ ամբողջ պատկերացած, լեռները, անտառները, այրերը, գիւղերը, որ այնքան ինձ մտերիմ են... Ա՜խ իմ կռիւներս... ապստամբական կեանքը, իր հաճոյքնե-

րով ու իր տագնապներով կը շարուին աչքիս առջեւ. ...Նոյնպէս կը տեսնեմ իմ բազմաթիւ սիրական Հայ գիւղացիներս, որոնց օգտակար ըլլալուս համար սրտանց ուրախ եմ։ Գիտեմ, ապագային յոյսերս պիտի կատարուին անշուշտ։ Սիրելիս, կախաղանիս տակէն կարծես աւելի պարզ կը տեսնեմ մեր ցանկացած առաւօտին արշալոյսը. այն համոզումս ալ միշտ կը մնայ, որ նահատակներու արիւնով միայն Հայ ժողովուրդը կրնայ ունենալ նոր բաղդաւոր կեանք մը։ Այդ կեանքին համար որքան արիւն թափուի՝ քիչ է։ Մեր ուզածները օր մը անպատճառ պիտի իրականանան. ժողովուրդը մղված իր թշուառութենէն պիտի շարժի միշտ, մինչեւ որ նոր կեանք մը ձեռք բերէ. միայն թէ անոր սրտոտ, խելացի առաջնորդներ պէտք են. այդ ալ դուք պիտի ըլլաք միշտ։ Մի մոռնաք ձեր Թորոսի այդ կտակը։

Ուրախ եմ որ միւս ընկերներս պաղարիւնութիւն կը պահեն։ Կիւլպէնկը կըսէ՝ „Ա՜խ իմ սիրելիս, խեղճ Հայ ժողովուրդ, եթէ տասը կեանք ունենայի, տասն ալ կուտայի քեզ համար"։ Եթէ առիթ գտնեմ, կը գրեմ դարձեալ. եթէ չը գտնեմ, իմ հրաժեշտս կուտամ բոլոր սիրելիներուս։ Թող ներէ ինձ ընտանիքս, որ խաղաղ կերպով նահատակի քունը քնանամ։ Քաջալերեցէք իմ սիրական գիւղացիներս. ըսէք անոնց թէ Թորոսներ կրնան մեռնիլ ու պէտք է որ մեռնին, բայց անմահ են լուսաւոր գաղափարներ. հաւատք գոյացուցէք մեր արդար դատի յաղթանակի մասին։ Կրծքիս կը սղմեմ բոլոր պաշտելի Հայ գործիչները. Թող երբէք չը թուլնան եւ միշտ բարձր պահեն յեղափոխութեան դրօշը, Հնչակեան դրօշը։ Կորուստով պիտի շահինք։

Քոյդ ԹՈՐՈՍ.

## II

### Կախվելուց մէկ օր առաջ գրված.

Սիրելի ընկերներ,

Ա՛լ ստոյգ է. ժամերով կը համրուին մեր օրերը. կօգտուիմ առիթէն, քանի որ դիակ մը պիտի դառնամ կամ այսօր կամ վաղը։ Կեանքի եւ մահուան մէջտեղը կայնած եմ. մարգարէական ոգի մը կուգայ իմ վրայ. ապագան երբեք այսչափ պարզ տեսած չունէի. Հաւատքը ինձ համար իրականութիւն մը կը դառնայ այս պահուս։ Այդ հաւատքը ներշնչեցէք ժողովուրդին, նաեւ սա փրկարար համոզումը, թէ՝ ժողովուրդի համար ուզել և կրնալ նոյն բաներ են։ Զինեցէք կիներն ալ նոր գաղափարներով։ Թիւրքին մերկութիւնը, ապականութիւնը և կործանող ընթացքը ազատ համարձակ երեւան հանեցէք, ինչպէս մինչեւ հիմա. վշտացեալներ շուտ կը միանան։ Հարուածներէ ու կորուստներէ մի վհատիք. այս՝ ցաւերուն սկիզբն է. դեռ աւելի մեծ հարուածներ պիտի ըլլան, իրարանցումներ, կռիւներ, արիւն. այս է ազատութեան ճամբան։ Մի բնաւ թուլանաք. փրկութեան օրը մօտ է, եթէ անօգնական չի մնան գործիչները։ Հայուն ազատութիւնը հայը պիտի գործէ. մուրալը օգուտ չունի. միշտ, պիտի խաբեն ձեզի։ Շուտ կը հասնի ցանկալի օրը։ Պէտք է շատ ոյժ տալ ասպատակներու կազմակերպութիւններուն. ատոնք հրաշքներ կրնան գործել։ Շատ գործեցէք, աղէկ գործեցէք, միասին և կանոնաւոր գործեցէք։ Թիւրք բռնակալի ապականած կառավարութիւնը միշտ առիթներ պիտի տայ ժողովուրդը

*կատղեցնելու. այդ կատաղութենէն միշտ պէտք է օգտուիլ։ Սիրտ տուէք, պատրաստեցէք գիւղացիներուն.... ա՜խ իմ սիրական գիւղացիներս... Զգուշացէք ժողովուրդները իրարու դէմ գրգռելէ. մեր դատը անիրաւ, բռնակալ, աղտոտ կառավարութեան դէմ է, որ կառավարութիւն չէ, այլ՝ հրէշային մէկ ճիւաղ, որ իր հոտած գոյութիւնը պահպանելու համար իր բոլոր ժողովուրդի կեանքը կը ծծէ... Ապագան երկու թուք ունի. մին պիտի թքնէ այս անարգ կառավարութեան աղտոտ գոյութեան վրայ, միւսը պիտի թքնէ մեր ներքին և եւրոպացի թշնամիներուն երեսը. իսկ մեր թշուառ սիրելի ժողովուրդին կը մնայ փառաւոր յաղթանակը, եթէ գիտնայ ՙառանց յուսահատելու առաջ երթալ այս արիւնալի և փշոտ ճանապարհէն։*

*Ինքս միասին՝ պաղարիւն կերպով և եթէ կարելի ըլլայ՝ արհամարհանքով մահը դիմաւորելէ առաջ, կախաղանի տակէն սրտանց կը գրկենք մեր բոլոր սիրելիները, բոլոր ընկերները. մեր խոնարհ յիշատակը յարգողներուն կը կտակենք շարունակել միշտ գործը։ Մնաք բարով, մնաք բարով.... Ա՜խ, այդ խօսքէն կը սարսռամ... Այդքան շուտ... Ինքզինքս յուզուած կըզգամ... բայց չի պիտ պակսի իմ մէջ ոյժս և մահուան առջեւն ալ պիտի կրնամ ըսել կեցցէ՛ Նոր Հայաստան... Մնաք բարով. կրկին կը սղմեմ ձեզ կրծքիս... Ա՜խ, երանի այդ իրական ըլլար... Խօսքս լմնցաւ... կախաղանը ինձ կըսպասէ...*

Ձերդ ԹՈՐՈՍ.

Գաղատիա — Քանտ, 17 Յուլ. 1893

# ՑԱՆԿ

Երես





